# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ:
ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Լույս է տեսնում 1923 թվականից

## Այս համարում 8 • 88



Հանձնված է արտադրության 01.06.88 թ.: Ստորագրված է տպագրության 01.08.88 թ.: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 66232: Պատվեր՝ 1088: Գինը՝ 15 կոպ.:
Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:

Сдано в набор 01.06.88 г. Подписано к печати 01.08.88 г. Формат 70×100 1/16. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 66232. Заказ 1088. Цена 15 коп.
Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.

**Շապիկի 1-ին էջին՝ ՍԵՐԳԵՅ ՓԱՐԱՋԱՆՈՎ. «ԸՆԿՈՒՅԶՈՎ ՄՈՒՐԱԲԱ»:**

Երբ Անդրեան զգաց, որ գետինը մի տեսակ անբնական փոս ընկավ ոտքի տակ, ուղեղում փայլատակեց սոսկալի միտքը. ական:

Երբեք կյանքում նման զգացողություն չէր ունեցել, քանի որ մարդուն վիճակված չէ այդ զգացողությունն ապրել երկու անգամ, բայց խորապես համոզված էր. ոտքերի տակ ական է: Անդրեան քարացավ-մնաց տեղում: Անխուսափելի մահվան գիտակցությունից գլուխը պըտըտվեց, և արևը, որ սոճիների հովանոցանման ճյուղերի ու մամուխի մացառուտի միջով խփում էր ուղիղ աչքերին, հանկարծ խավարեց: Վայրկենաբար հոգում ցամաքեց զգացմունքների աղբյուրը, որի շնորհիվ դեռևս քիչ առաջ նման էր բոլոր մարդկանց. այժմ իրեն դիտում էր դրսից, մշուշոտ հեռվից, մահվան շեմից: Հետո սառը քրտինքը պատեց ամբողջ մարմինը, և Անդրեան զգաց ինչպես են խոշոր կաթիլները գլորվում քունքերից, առվակների նման հոսում մեջքից, հավաքվում թևատակերին ու ձեռքի ափերում: Նա նորից սոճիների ճյուղերի միջով տեսավ արևի սև գունդը և մուգ մացառները, զգալով, որ հիմա երեխայի նման լաց կլինի: Շրթունքները անձայն շարժվեցին.

— Աստված իմ, աստված իմ...

Մոտերքում պիտի որ մարդիկ լինեին, նրանք նույնպես իր նման ճամփա էին բացում մացառուտի միջով, ճանապարհի ապահովությունն ստուգելով մագնիսային ականորսիչներով:

— Օ՜,— բացականչեց:

— Օ՜,— հնչեց պատասխան կանչը:

Հավանորեն պատասխանողը գտնվում էր մի հարյուր մետրի վրա:

— Օգնեցե՜ք,— գոչեց Անդրեան:

Եվ նորից շունչը պահեց, ականջը՝ ձայնի: Այժմ արևը սովորականի նման փայլում էր: Ճառագայթները անցնելով սոճու ճյուղերի միջով՝ վերածվում էին նուրբ ոսկեփոշու, և անտառը, թվում էր, դողում է այդ անիրական լույսի մեջ: Անդրեայի խոնավ շապիկը կպել էր մեջքին: Նա հիշեց մի հին երազ, որ հաճախ էր տեսնում մանկության օրերին: Աստված գիտե, թե ինչ էր նշանակում այդ երազը, բայց ամեն անգամ ամբողջապես դողդողում էր քրտինքով և սոսկումով արթնանում: Տեսնում էր՝ իբր ուզում է վազել, բայց ինչ-որ բան ամուր պահում է իրեն, և ինքը չի կարողանում ոչ մի քայլ գցել, ոտքերը կարծես կպած

ԿԱՌԼՈ ՄՈՆՏԵԼԼԱ

# Կանաչ ջունգլին

Թարգմանեց ՍՈՖԻ ԱՎԱԳՅԱՆԸ

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

լինեին գետնին: Գուցե սավա՞նն էր փաթաթվում ոտքերին, քնի մեջ չէր կարողանում ոտքերն ազատել, և դա պատճառ էր դառնում մղձավանջային երազի:

Հանկարծ Անդրեան անդիմադրելի պահանջ զգաց նստելու: Նստել ուղղակի գետնին, հողը ծածկող սոճու չոր ասեղների վրա: Ամեն ինչ կտար, միայն թե նստեր: Բայց դա անհնարին էր: Զրգված անշարժ մարմինը ոտքերը ծառաքնի նման մխրճել էր այդ մի թիզ հողի մեջ: Չէ՞ որ ծառերը դատապարտված են հավիտյանս մնալու այդ դիրքով: Այս սոճիները, որոնց ճյուղերից ծորում է արևի լույսը և նստում գետնին թեթև ոսկեփոշու նման, հավետ անշարժ կանգնած են այստեղ... Անդրեան մեքենայաբար, որևէ բան անելու համար, քանդեց շալվարի կոճակները, միզեց. գետնին ընկավ միայն մի քանի կաթիլ: Այդ ժամանակ լսեց ճյուղի ճթթոց:

— Օ՜,— կանչեց նա:

— Ի՞նչ է պատահել,— լսվեց մեկի ձայնը, և անմիջապես թփերի մեջ հայտնըվեց մարդու դեմքը:

Անդրեայի ընկերներից մեկն էր: Նա կանգ առավ քսան քայլի վրա:

— Չմոտենա՛ս,— ասաց Անդրեան,— ես կանգնած եմ ականի վրա:

Այդ ամենն ասվեց բնական ձայնով: Թփերի մեջ կանգնած մարդու դեմքը ոչինչ չէր արտահայտում: Նրա սևեռուն հայացքը հանդիպեց Անդրեայինն:

— Չշարժվե՛ս,— ասաց նա, հապաղելով:— Հիմա մարդ կկանչեմ:

Եվ թափով շուռ եկավ, վազեց անվըտանգ արահետով, որտեղից եկել էր:

Մարդն անհետացավ, բայց Անդրեան լսում էր ինչպես է նա ճամփա բացում խիտ թփերի միջով: Անդրեայի միտքն ընկավ մի դեպք մանկությունից. հոր հետ գնում էին անծանոթ, գյուղամիջյան մի ճանապարհով: Հայրը իրեն մենակ թողեց, գնաց բլուրի վրա երևացող պանրագործարանի կողմը, որպեսզի ճանապարհ հարցնի:

— Ինձ սպասիր այստեղ,— ասաց հայրը,— տեղ չգնաս:

Անդրեան մնաց, և հանկարծ նրան պաշարեց մենակության տարօրինակ, տագնապալի զգացումը, ինքն էլ չգիտեր ինչից է վախենում, բայց սիրտն անհանգիստ էր: Նստեց խոտին, լաց եղավ, ուզում էր վազել հոր ետևից, բայց իրավունք չուներ շարժվելու տեղից...

Անդրեան այժմ լարված ականջ էր դնում հեռացող մարդու ետևից, իսկ նա ավելի ու ավելի էր խորանում թավուտում: Վերջապես ճյուղերի ճթթոցը լռեց, Անդրեան նորից հիշեց հորն ու մտածեց. եթե հայրը լիներ, այսպիսի րոպեին չէր հեռանա իրենից: Եվ մի ակնթարթ սոճիների ճյուղերի միջով թափանցող արևալույսը նորից խամրեց, և Անդրեային նորից պաշարեց նստելու տանջալից ցանկությունը: Արդեն տասը րոպե էր, ինչ անշարժ կանգնած էր ասես «ըզգաստ» հրամանով: Ուզում էր լաց լինել, բայց հիմա արդեն երեխա չէր, իսկ այն մարդը, որ գնացել էր կանչելու ընկերներին, հայրը չէր:

— Աստված իմ,— շշնջաց Անդրեան, իրեն հաշիվ չտալով, որ աստված է կանչում առանց դրա պահանջն զգալու,— աստված իմ, ի՞նչ է լինելու:

Գիտեր, որ շուտով, չնայած սպասման րոպեները անշարժության մեջ ժամեր էին թվալու, կհայտնվեն ընկերները: Սակայն ինչպե՞ս պիտի օգնեին իրեն... Անդրեան չէր ուզում խորանալ այդ հարցի մեջ, մտածում էր լոկ մի բան. պետք է անշարժ կանգնած սպասել: Քանի դեռ ոտքը չի կտրել գետնից, ականը չի պայթի: Երանի կարողանար հավերժ մնալ այս դիրքով. ընկերները կգային, մի հոլիկ կսարքեին, օրական երկու անգամ ուտելիք կբերեին... Եթե կարողանար մնալ այդ դիրքով, չշարժվեր, նմանվեր շրջապատի ծառերին, ականը չէր պայթի: Ինքն է լիցք տվել ականին, ոտքը դնելով վրան: Դա լավ ծանոթ ականի տեսակ էր, որի կառուցվածքը ասես սատանայի ծաղր լիներ. կարելի է հան-

գիստ սեղմել վերևից և ոչինչ տեղի չունենա, բայց բավական է թուլացնել ճնշումը՝ զսպանակի պես բացվում է և պայթում: Գժվել կարելի է, ընդամենը ողորմելի ինչ-որ զսպանակ, մետաղյա չնչին մի պարուրակ, որ գոնու [illegible] ըն-ման ձգվում, բացվում է:

— Աստված իմ,— մրմնջաց Անդրեան, մտածելով ականի կառուցվածքի մասին:— Աստված իմ, մի՞թե դա հնարավոր է:

Եվ հիշեց մանկության լարովի բեռնատարը. նրանում նույնպես զսպանակ կար, մի անգամ, երբ բանալիով լարում էր մեքենան, զսպանակը դուրս թռավ, մատը կտրեց: Այդ կանաչ մեքենան Անդրեան բաց էր թողնում սենյակում, և սա անընդհատ թռչում էր պատերին ու աթոռների ոտքերին կամ գլորվում էր պահարանների տակ: Մեքենան նվեր էր ստացել քեռուց, ծննդյան տոներին, չնայած ինքն արդեն գիտեր, որ ծնունդն ու մկրտությունը հնարովի հեքիաթներ են, բայց այնպես էր պահում իրեն, իբր հավատում է, որովհետև ուզում էր նվերներ ստանալ:

Անդրեան լարեց լռությունը. մացառների մեջ խշրտոց լսվեց, թեև դա կարող էր որևէ կենդանի լինել, թեկուզ՝ թփերի մեջ շարժվող վայրի ճագար: Չէ, տղաները չէին, վայրի ճագար էր:

Ինչ լավ է երկարականջ ճագարի համար, ինչքան սիրտն ուզի՝ կարող է վազվզել անտառում: Ճագարների համար հեշտ է, փետուրի պես թեթև են, և եթե անգամ թաթիկները ականի դիպչեն, չի պայթի: Անդրեան շարունակ լարված ականջ էր դնում թփերի մեջ շարժվող ճագարի խշրտոցին:

Անտառում թագավորում էր խոր լռություն, բայց եթե ուշադիր ականջ դնեիր, կզգայիր, որ լռությունը լի է հազիվ լսելի շրշյունով, որ հանում էին միջատներն ու բույսերը: Ծառերը շնչում էին, հողը ծածկող սոճու բյուրավոր ասեղները ճռթում էին վխտացող մրջյունների ծանրությունից, արևի լույսը ծառերի ճյուղերի ու բների միջև թրթռում էր և կարծես արձակում էր ինչ-որ անորսալի հնչյուն: Այո, Անդրեան լսում էր ինչպես է օդում դողդողում փոշեհատիկը: Իրեն շրջապատող անտառն ասես կենդանի լիներ, դանդաղ մոտենում էր, վրա գալիս, ծառերն ասես միահյուսվում էին, և շուրջը տիրող լռության խորհուրդը, բը-սականության լռելյան կյանքի խորհուրդը դյութում էր նրան, հոգին լցնում տագնապով: Անդրեայի լարված մարմինը թեթևակի ցնցվում էր և նորից ընկղմվում ընդարմացման մեջ. ձեռքերի ու ոտքերի վրայով վազվզող մրջյունները հիշեցնում էին անտառի մացառուտի մեջ լույսի և լռության հազիվ նկատելի թրթռումները: Բայց հետո նրան հանկարծ ցնցեց ջղակծկումը, և Անդրեային սկսեց թվալ, թե իրեն շրջապատող ամբողջ աշխարհը՝ և՛ անտառը, և՛ բարձրում՝ սոճիների վրա փռված երկինքը, և՛ արևը, ամեն, ամեն ինչ ճնշում է ականին, որի վրա կանգնած է ինքը:

Երբ լսեց մացառների միջով իր կողմն շտապող ընկերների ոտնաձայները, արագ-արագ թարթեց աչքերը, ասես քնից էր արթնանում: Հետո քիչ մնաց նետվեր նրանց ընդառաջ: Սակայն ժամանակին սթափվեց և ոտքերը ավելի ուժեղ սեղմեց ականին:

— Օ՜,— բացականչեց նա՝ ձեռքի ափերը ձայնափողի պես մոտեցնելով շրթունքներին:

Այժմ արդեն Անդրեան հստակ ոտնաձայներ էր լսում թփուտների մեջ:

— Օ՜,— պատասխանեցին ընկերները,— գալիս ենք:

Սպասողական վիճակում նա ակնդետ նայում էր խիտ թավուտին և հանկարծ զգաց, որ արյունը ավելի ուժեղ է խփում քունքերում, և ամեն ինչ երերաց աչքին: Անդրեան այլևս չէր զգում ոտքերի վրա վազվզող մրջյուններին, միայն ներբաններն ու սրունքներն էին անտանելի ցավում երկարատև անշարժությունից: Նա տանջալիորեն ցանկանում էր նստել: Մեքենայորեն Անդրեան նորից քանդեց շալվարի կոճակները, որ միզի:

Անդրեայի ուղեղն աշխատում էր տենդային արագությամբ, անկապ մտքերը հաջորդում էին իրար, ուղեղն անտանելի գրգռված էր, թվում էր՝ իր մեջ պաղպաջող կյանքի աղբյուրը այլևս հրաժարվում է հիշել ոտքերի տակ գտնվող ականի գոյությունը:

— Օ՜,— կանչեցին Անդրեայի մոտ շտապող մարդիկ:

— Օ՜,— արձագանքեց նա:

Բանից անտեղյակ մարդուն կարող էր թվալ, թե նրանք տափկնցի են խաղում խիտ մացառուտում:

Առջևում հայտնվեց անձնախմբի պետը, ապա մացառների միջով իրար ե-

տնից զգույշ գալիս էին մյուսները՝ եր-
կար, մագնիսային ականորսիչները ու-
սերին: Տեսնելով անշարժ կանգնած
Անդրեային, բոլորը քարացան տեղերում:

Կիսաբոլոր դասավորված՝ հայացքնե-
րը լուռ սևեռել էին Անդրեային: Նկատե-
լով, որ ընկերները լուռ ու մռայլ կանգ
առան և այլևս ոչ մի քայլ չեն անում, նո-
րից հուսահատության դողը բռնեց ամ-
բողջ մարմինը… Զգաց ինչպես է սեղ-
մըվում կոկորդը և դեմքը ծամածռվում:
Նա հայացքը հառել էր շուրջը կանգնած
մարդկանց և ձայն չէր հանում:

— Այդ ի՞նչ ես արել,— ասաց անձ-
նախմբի պետը:— Չգիտեի՞ր, որ այս
կողմերում առանց ականորսիչի ոչ մի
քայլ չի կարելի անել:

Խոսքերն հնչեցին խիստ, նա կարծես
հանդիմանում էր Անդրեային: Սա լուռ
էր և քարացած հայացքը չէր հեռացնում
պետից ու որոշ տարածության վրա բո-
լորաձև կանգնած մարդկանցից: Նա ու-
զում էր իմանալ լոկ մի բան, թե նրանք
ինչո՞վ կարող են օգնել իրեն: Այժմ այ-
լևս իմաստ չուներ հիշեցնել, թե առանց
ականորսիչի ոչ մի քայլ չի կարելի գը-
ցել: Բայց Անդրեան հասկանում էր, որ
հարց տալն անօգուտ է, և բառերը դեմ
էին առել կոկորդին, լեզուն ցամաքել էր
բերանում: Խիտ թավուտում հեղձուկ էր
և տոթ: Անդրեան դողում էր:

— Դու համոզվա՞ծ ես, որ ական է,—
հարցրեց անձնախմբի պետը միևնույն
խիստ տոնով:— Գուցե ճագարի բուն է…

— Կարծում եմ ական է,— լսվեց հըս-
տակ պատասխանը:

Բոլորը շարունակում էին լուռ նայել

Անդրեային, դուրս չգալով մացառուտից:

— Համենայնդեպս, հուսանք, որ ական չի,— մրթմրթաց անձնախմբի պետը,— այլ ճագարի բուն է... կամ վատթար դեպքում, եթե անգամ ական է, չի պայթի: Լինում է, որ ականը չի պայթում, եթե ներսը ջուր է լցվում...

Անդրեան պետին էր նայում բացակա հայացքով, զգացվում էր, որ խոսքերը չեն հասնում նրա գիտակցությանը: Միակ բանը, որ իրեն կապում էր մացառուտի այս մարդկանց, իրեն ուղղված նրանց հայացքն էր: Ոչ ոք չէր կարող օգնել իրեն: Ընկերները կանգնած են հեռու և միայն անքթիթ նայում են իրեն: Ոչ, ճագարի բուն չէր ոտքերի տակ, ական էր: Մնում էր վերջին հույսը՝ որ չի պայթի:

— Աստված իմ,— հազիվ լսելի շշնջաց Անդրեան:— Աստված...

Հանկարծ նրան պաշարեց անտանելի անհարմարության զգացումը. նման ամոթի զգացում մարդն ունենում է երբ իրեն տեսնում են մերկ վիճակում, և դա այն պատճառով, որ ընկերները ակնդետ իրեն էին նայում թփերից: Ինչո՞ւ են կանգնել նայում, եթե օգնել չեն կարող: Ինչի՞ են սպասում: Ի՞նչ են ցանկանում տեսնել...

Դեռևս այն ժամանակ, երբ Անդրեան առաջին անգամ լսեց մոտեցող ընկերների ձայները, արյունը ավելի ուժեղ խփեց քունքերում, և ամեն ինչ կատաղի պտըտվեց շուրջը, հիմա ամեն ինչ նորից և ավելի արագ սկսեց փայլկտալ աչքերի առաջ: Նսեմ մշուշի մեջ զանազանում էր անխոս ընկերների դեմքերը, և՛ անտառը, և՛ խիտ մացառները, սոճիների բարձր հովանոցաձև սաղարթները, և՛ նրանց տակ օրորվող ոսկեփոշին.—ամեն, ամեն ինչ կարծես ներծծվել էր խոր լռությամբ, այդ լռությունը գալիս էր հենց իրենից, և իրեն շրջապատող մարդիկ ու առարկաները, թվում էր, հազիվ էին շնչում: Ոչ միայն Անդրեայի շուրջը, այլև նրա գիտակցության մեջ տեղի էր ունենում այդ գլխապտույտ շուրջպարը. հպանցիկ, անորսալի պատկերները կայծակնային արագությամբ փայլատակում էին հիշողության մեջ: Մտովի տեսնում էր այն ամենը, ինչ տեղի էր ունեցել իր կյանքում մինչև այսօր: Հետո Անդրեան տեսավ իր կնոջ դեմքը, և գլխապտույտ առաջացնող պատկերների շուրջպարը հանկարծ դադարեց, ինչպես կինոապարատում խցանված ժապավեն: Անդրեան զգաց, որ կոկորդը սեղմվել է և ուզում է բարձրաձայն արտասանել կնոջ անունը: Բայց ձայն չհանեց: Նա տեսնում էր կնոջը, իրական, կանգնած իր դիմաց, ծառերի ճյուղերից թափվող արևի շողերի տակ, և նորից պատկերները խռնըվեցին գլխում, բայց այս անգամ դրանք կնոջ տարբեր պատկերներն էին, հարյուրավոր պատկերներ, ցավ պատճառելու աստիճան ծանոթ ու հարազատ, դանդաղ հառնում էին նրա գիտակցության մեջ: Պայծառացած ինչ-որ զգացումով մտածեց, որ միայն նրա՝ Ջուլյայի պատճառով այդքան տխուր է մեռնելը. ինչպե՞ս պետք է բաժանվի նրանից, կորցնի նրան: Այդ մտքից գիտակցությունը հստակվեց, և մի տեսակ անբացատրելի հանդարտություն իջավ վրան:

Նորից տեսավ մացառներում անշարժ կանգնած ընկերներին, որոնք առաջվա նման անթարթ իրեն էին նայում:

— Ուզում եմ գրել կնոջս, հրաժեշտ տալ նրան,— պարզ ասաց Անդրեան:

Այժմ իրեն հառված աչքերը անհարմարության զգացում չէին առաջացնում: Դրանք իր ընկերներն էին, իր կողքին աշխատում էին և նույնպես վտանգում էին իրենց կյանքը: Ժամանակ առ ժամանակ նրանցից որևէ մեկը պայթում էր ականի հետ. ինքը նրանց համարյա չէր ճանաչում. նրանք մի կողմ կանգնած նայում էին իրեն, որովհետև ոչ մի բանով օգնել չէին կարող, եթե կարողանային, անպայման կօգնեին:

— Միգուցե, համենայնդեպս, հաջողվում է...— անվճռական խոսեց անձնախմբի պետը,— տեսնո՞ւմ ես ծառը, ձախ կողմում... այ, այն: Հարկավոր է ցատկել այնպիսի հաշվով, որ կարողանաս պահվել բնի ետևում... Այնքան էլ դըժվար չէ:

Դա անիրագործելի բան էր. նրա և ծառի միջև եղած տարածությունը կլիներ չորս մետր, բացի այդ, մեջտեղում մացառուտ կար, որը պետի կանգնած տեղից չէր երևում: Էլ չխոսելով այն մասին, որ մատղաշ սոճու բունը շատ էր բարակ:

— Ուզում եմ գրել կնոջս,— նույնքան պարզ կրկնեց Անդրեան:— Թուղթ չունեմ:

Անձնախմբի պետը մի րոպե տատանվեց, ապա գրպանից հանեց ծոցատետրը և մատիտ: Անդրեան աչքերը հառել էր ոսկեփոշու մեջ ողողված ձախ

կողմի ծառին:

— Սիրելի Ջուլյա,— սկսեց Անդրեան,— երբ ստանաս այս նամակը, ես արդեն չեմ լինի…

Մի պահ լռեց, ասես մոռացել էր ինչ է ուզում ասել: Եվ նորից պատկերները խռնվեցին գլխում, նրան պաշարեց այնպիսի սարսափ, որ ուզեց լալ ու գոռալ…

— Սիրելի Ջուլյա,— թելադրեց Անդրեան,— դու չէիր ուզում, որ ես անեմ այս աշխատանքը, բայց մի՞թե մեղավոր եմ, որ ուրիշ աշխատանք չէի գտնում:

Նորից կանգ առավ: Գլխում ծագեց անակնկալ միտք՝ տեղեկացնել կնոջը, որ գա այստեղ, ինքը կկարողանա անշարժ, ժամեր շարունակ սպասել նրա գալուն: Իսկ նա, նա մոտ կգար, հեռու չէր կանգնի և այս մարդկանց նման չէր նայի իրեն:

— Տեր Աստված,— շշնջաց Անդրեան:

Նա նկատեց անձնախմբի պետին, որ սպասում էր իրեն՝ առանց մատիտը թղթից կտրելու:

— Սիրելի Ջուլյա,— շարունակեց Անդրեան,— ես միշտ սիրել եմ քեզ, ամբողջ պատերազմի ընթացքում երազում էի վերադառնալ տուն, նորից տեսնել քեզ: Իսկ այժմ աղոթում եմ աստծուն, որ ականը չպայթի, որովհետև չեմ ուզում կորցնել քեզ, չեմ ուզում ընդմիշտ բաժանվել քեզնից…

Նա աչքերով հետևում էր մատիտի շարժվելուն: Այժմ այլևս ոչ ոք չէր նայում Անդրեային, բոլորը հետևում էին մատիտին, որ վազում էր թղթի վրայով… Ամեն ինչ՝ և՛ ծառերը, և՛ կնոջ պատկերը, և՛ ոտքերի տակի ականը, և՛ մանկության հիշողությունները, ամեն, ամեն ինչ խելահեղ պտտվում էր Անդրեայի գիտակցության մեջ:

Մնում էր միայն մի բան, հրաժեշտ տալ…

— Սիրելի Ջուլյա, լավ է, որ երեխա չունենք… Բայց դու միշտ հիշիր, չմոռանաս ինձ… Եվ չամուսնանաս ուրիշի հետ,— ավարտեց Անդրեան:

Այս խոսքերով նա ցատկեց տեղից:

Մացառների մեջ կանգնած մարդիկ տեսան, թե ինչպես Անդրեայի մարմինը շեշտակի թռավ մացառուտի վրայով, շրջվեց թռիչքի պահին և նույն վայրկյանին ջահի նման բռնկվեց, ճարակ դառնալով պայթյունի կարմիր բոցերին:

Եվ անլուր սոսկումից բոլորը բերանքսիվայր փովեցին գետնին:

ԱՂՎԱՆ ՎԱՐԴԱՆՅԱՆ

# Ձնծաղիկն աշնանը

Հիմա ես քեզ ի՞նչ անուն տամ,
Աշնան կրծքից բխած ծաղիկ,
Քո ձևերը անգիր գիտեմ,
Բայց աշնանը ի՞նչ ձնծաղիկ:

Ես տեսել եմ գալուստը քո
Եվ սովորել դեռ շատ վաղուց
Ձնծաղիկին մարտն է բերում
Ազատելով ձյուն-անկողնուց:

Բայց դու հիմա հայտնվել ես
Այս արևոտ նոյեմբերին,
Եվ իմ զարմանքն է թրթռում
Քո ցողունին ու թերթերին:

— Ձյուն է իջել,— ասում են ինձ,—
Եվ արև է եղել նորից,
Ձնծաղիկը դուրս է եկել
Անլուր աշնան պաղ օրերից:

Մի քանի օր նա կառկայծի
Թերթիկներով կապտաարծաթ,
Հետո նրա երազներին
Մանր կիջնի ձյունը դարձյալ:

— Գարնան ծաղիկ, խաբվե՞լ ես դու,
Թե՞ ինքդ ես բացվել անահ,
Որ խաշամն ու ծառերն էլ մերկ
Քո պատկերին արժանանան:

Ես չգիտեմ, ես ավելի
Անխոս եմ, քան բուրմունքը քո,
Եվ իջնում եմ և համբուրում
Ցողուն ու թերթ այս շշուկով:

ՌՈՒՍԼԱՆ ՍԱՂԱԲԱԼՅԱՆ

# ՆԱՎԱԲԵԿՅԱԼԸ



Նկարը՝ ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

«Հայրս մի փոքրիկ կալվածք ուներ Նոտտինգեմշիրում: Ես նրա հինգ որդիներից երրորդն եմ: ...Ինչնէ, չծանրաբեռնեմ ձեզ իմ կենսագրության մանրամասնություններով և սկսեմ այն բանից, թե ինչպես 1699 թվականի մայիսի 4-ին մեր «Անտիլոպ» նավը դուրս գալով Բրիստոլի նավահանգստից, ուղղություն վերցրեց դեպի Հարավային ծով: Ինչ եղավ հետո ... Ճանապարհին սկսված սարսափելի փոթորիկը մեզ քշեց դեպի հյուսիս-արևմուտք, և մենք կորցրինք կողմնորոշումը: Քսան հոգի մահացան քաղցից, մնացել էինք հինգս, երբ նավը, վերջնականապես մոլորվելով թանձր մըշուշի մեջ, բախվեց ժայռին ու խորտակվեց: Ի՞նչ պատահեց ընկերներիս, չիմացա: Քամուց փոթորկված ալիքներն ինձ տանում էին անհայտ ուղղությամբ, և աստված գիտե, թե ինչքան ժամանակ էր անցել, երբ իմ մարող գիտակցության վերջին կայծով ես զգացի ոտքերիս տակի կարծր հողը: Փակեցի աչքերս և խորասուզվեցի անգոյության մեջ...»:

— Ամեն ինչ լավ է, թող շարունակի:

— Ինչպե՞ս թե շարունակի, պրոֆեսոր: Քսան տարի միասին ենք ապրել, լավ հասկացել ենք իրար, իսկ հիմա... Հիմա ես չեմ հասկանում ինչ է կատարվում նրա հետ: Աշխատեք մի կերպ լըռեցնել նրան, վերադարձնել տուն, խընդրում եմ:

— Բանն էլ հենց այն է, որ «մի կերպ» հնարավոր չէ: Սա նուրբ խնդիր է, հավատացեք ինձ: Թող շարունակի: Եվ անհոգ եղեք, ես իմ գործը լավ գիտեմ:

«...Ես պառկեցի թավշյա փափուկ խոտին ու քնեցի: Կյանքումս այդպես խորը չեմ քնել: Այդ երանելի նինջը հավանաբար ինը ժամ տևեց: Երբ արթնացա, օրն արդեն բացվել էր: «Բախտդ նորից բերեց, Լեմյուել,— ասացի ինքս ինձ,— աղոթիր աստծուն»: Հետո ոտքի ելա և, ի զարմանս ինձ, հասկացա, որ գամված չեմ գետնին, կարող եմ շարժվել, քայլել: Չափազանց տարօրինակ էր: Մի՞թե ես լիլիպուտների աշխարհում չեմ: Եթե լիլիպուտներ չկան, ապա հսկաները ո՞ւր

են: Կամ ինչո՞ւ է խոտը այդքան ցածրիկ: Նայեցի շուրջս, փոքրիկ մարդուկները ոչ մի տեղ չէին երևում: Վախեցած վեր նայեցի, հանկարծ ու հայտնվեն հսկաները, հայտնվեն ու ինձ՝ թշվառիս, ատված չանի, տրորեն:

Բախտս երբեք էլ չի բերել. անհետաքրքիր, ձանձրալի մանկագիտություն, դժբախտ ամուսնություն, հիմա էլ, խընդրեմ, հսկաներ… կտրորեն, հետքս էլ չի մնա… Թեպետ, չէ, զուր եմ բողոքում՝ ճանապարհորդությունների ընթացքում իմ աստղը միշտ փայլել է: Ահա, հիմա էլ անձնակազմից միայն ես փրկվեցի: Համ էլ ո՞վ գիտե, կղզու բնակիչները, գուցե այնուամենայնիվ, լիլիպուտնե՞րն են:

Քայլում էի ծովեզրով: Հայացքս մեկ վերև էի գցում, մեկ՝ ներքև՝ կամ հսկայի աժդահա շողքը կընկնի վրաս, կամ էլ իմը՝ սարսափահար լիլիպուտների: Հրաշք կլիներ, թե երկրորդը տեղի ունենար: Պատկերացնում էի ոտքիս տակից դուրս պրծնող խուճապահար մարդուկներին: Իսկ ես՝ հսկաս, կռանում, բարձրացնում եմ նրանցից մի քանիսին, ընրանք աղաչում են. «Գթացեք, գթացեք մեզ, պարոն Գուլիվեր, ինչ որ ուզեք, կանենք ձեզ համար»:

Իսկ եթե անտառից հսկա դուրս գա և ինձ՝ լիլիպուտիս խփի թևատակը, այդժամ ես ստիպված կլինեմ բարալիկ ձայնով աղերսել՝ «Գթացեք, գթացեք ինձ, պարոն հսկա: Ես ձեր բարեկամն եմ, հավատացեք: Մի դժբախտ մարդ եմ, նավաբեկության զոհ, նախկինում դիահերձող բժիշկ: Կարող եմ հերձել ձեր հանգուցյալին, եթե ուզեք՝ տատիկին, պապիկին կամ ծեր մորաքրոջը… Ինչպե՞ս… Ախ, հա, դուք տատիկ-պապիկ չունեք, իսկ ձեր մորաքույրը ամենևին էլ ծեր չէ և ուզում է ամուսնանա՞լ: Դե, ուրեմն՝ տա աստված, թագ ու պսակի արժանանա: Համենայն դեպս, նկատի ունեցեք, ես այսուհետև և ընդմիշտ ձեր տրամադրության տակ եմ: Միայն թե բաց թողեք ինձ և, ի սեր աստծո, մի փչեք վըրաս:

Այսպիսի մենախոսությունը, կարծում եմ, կալեկոծի նույնիսկ ամենադաժան հսկայի հոգին: Այնպես որ, հուսահատվել չարժե, չկա չարիք առանց բարիքի: Միայն թե իմանամ վերջապես՝ լիլիպուտնե՞ր են այստեղ բնակվում, թե՞ հսկաներ»:

— Հիմա ուշադիր եղեք: Կարևոր փուլը նոր է սկսվում, սկզբում զարմանք, հետո հիասթափություն, բեկում և վերջապես լիակատար ապաքինում: Սպասելիքները չեն իրագործվում, նա հրաժարվում է ընտրած կերպարից և վերադառնում է իրականություն: Սա է իմ մեթոդի գաղտնիքը, ուրեմն՝ սպասենք և հուսանք, որ ամեն ինչ բարեհաջող կավարտվի:

«…Դժվար է կիզիչ արևի տակ քայլելը՝ գլուխդ մեկ վեր, մեկ վար, չգիտես ում սպասես՝ լիլիպուտներին, թե՞ հըսկաներին: Կարծես խաղատիկնիկ լինես, գլուխդ՝ վերև-ներքև, վերև-ներքև: Պարանոցս սոսկալի ցավում է: Տարօրինակ է, խոտը շատ ցածր է՝ իսկը լիլիպուտների համար, իսկ ծառերը, ընդհակառակը, բարձր են, հսկաներին վայել: Բայց ոչ մեկն է երևում, ոչ մյուսը: Կղզու մի փոքր տարածքը միայն չեմ տեսել: Գուցե դեռ կհանդիպե՞մ նրանց: Եթե լիլիպուտներին հանդիպեմ, կհամաձայնեմ նրանց արքան դառնալ: Կհրամայեմ ինձ դըղյակ կանգնեցնել, որի համար տասը հազար, ոչ, հարյուր հազար լիլիպուտ կըպահանջվի, ու կսպասեմ փրկարար նավին: Իսկ եթե հսկաներ լինեն, ես ապաստան կխնդրեմ նրանցից: Միայն երեխաների խաղալիք-տնակում չլինի, երեխաները դաժան են, նրանք ինձ տանջամահ կանեն: Ես կայրեմ տիրուհու զարդատուփում: Այո, դա ամենալավ տեղն է: Կդառնամ հսկայի կնոջ մտերիմը, նա ինձ կվստահի իր գաղտնիքները, մի օր էլ գուցե սիրահարվի (ինչո՞ւ չէ): Եվ մենք երկուսով կփախչենք կղզուց: Փախուստ հսկա կնոջ հետ (ինչ ծիծաղելի է): Ասում եմ, չէ՞, չկա չարիք առանց բարիքի:

Այսպիսի մտորումների մեջ աջ ու ձախ չափչփում էի կղզին, մինչև համոզվեցի, որ ոչ մի կենդանի էակ չկա այնտեղ: Կղզին պարզապես անմարդաբնակ էր: Նստեցի քարին և սկսեցի մտորել. եթե կղզին անմարդաբնակ է, ապա… Հանելուկի պատասխանը շատ պարզ էր, այնքան պարզ, որ սարսուռ անցավ մարմնովս, ուրեմն, դուրս է գալիս ես՝ Լեմյուել Գուլիվերս, հորս հինգ որդիներից երրորդը չե՞մ: Այո, ես Գուլիվերը չեմ: Այդ հասկանալուն պես նստեցի քարին ու սկսեցի արտասվել»:

— Արդյոք, ամուսինս երբևէ կվերադառնա՞ ինձ մոտ: Այն անիծյալ օրվանից, երբ նա գնեց այդ հիմար զվարճասարքը

և սկսեց իրեն Գուլիվեր երևակայել, ես տասնյակ դռներ ծեծեցի, խնդրեցի, աղաչեցի ինժեներներին և բժիշկներին, որ օգնեն ինձ, ավելի ճիշտ՝ իմ խեղճ ամուսնուն, որն այդպես էլ մնաց խաղասարքի որոգայթների մեջ: Հիպնոս, հարյուրավոր դեղամիջոցներ՝ ամեն բան զուր էր: Եվ ահա դուք, պրոֆեսոր, ձեր մեթոդը... Արդյոք նա ուշքի կգա՞, որ ինքը Գուլիվերը չէ, այլ համեստ մի հաշվապահ՝ քսան տարվա իմ հավատարիմ ամուսինը: Գիտե՞ք, ինչքան շնորհակալ եմ ձեզնից:

— Չարժե, ի սեր աստծո: Ձեր ամուսինը առաջինը չէ, որին փրկում եմ այդ վտանգավոր խաղից: Ի դեպ, խաղն արդեն արգելված է, և խաղասարքը այլևս չի արտադրվելու: Բայց դեռ քանի քանիսին է պետք փրկել: Սկզբունքը միշտ էլ նույնն է՝ հենց որ խաղի ընթացքում որևէ բան խափանվում է, խաղացողը իսկույն հիշում է իր իսկական անունը, վերադառնում է ընտանիք: Իմ կարծիքով՝ չափազանց վտանգավոր խաղասարք է:

— Ե՞րբ նրան կտեսնեմ, պրոֆեսոր:

— Հիմա... հիմա նա կհիշի իր իսկական անունը:

«...Ես արտասվեցի, հասկանալով, որ Լեմյուել Գուլիվերը չեմ: Եվ ինչպե՞ս չարտասվեի: Այս անմարդաբնակ կղզում ինձ միճակված էր 28 տարի անցկացնել: Այո, այո, հենց 28 տարի... Ես վերջապես հիշեցի իմ իսկական անունը՝ նավաբեկյալ Ռոբինզոն Կրուզո, Յորք քաղաքից: Փոթորկի ժամանակ իմ նավը խորտակվեց Ամերիկայի ափերին չհասած, և ես հայտնվեցի օվկիանոսում սփռված բազմաթիվ անմարդաբնակ կղզիներից մեկի վրա: Ես սրբեցի արցունքներս և սկսեցի խրճիթս կառուցել»:

— Ի՞նչ պատահեց, պրոֆեսոր, ինչո՞ւ չի վերադառնում:

— Ոչինչ չեմ հասկանում: Ի՞նչ Ռոբինզոն Կրուզո, որտեղի՞ց: Սա ի՞նչ բան է: Իմ բազմամյա պրակտիկայում այսպիսի դեպք չի եղել: Չգիտեմ՝ ինչ անեմ: Այնուամենայնիվ, մի հուսալքվեք, զինվեք համբերությամբ... Ի՞նչ եք անում, տիկին... Ձեռք մի տվեք խաղալիքին, այն մի հոգու համար է: Այդ ո՞ւր:

— Նրա մոտ: Եթե նա չի կարող նորից դառնալ իմ համեստ հաշվապահ ամուսինը, ապա ես կվերափոխվեմ... Ուրբաթի:

Նոր թվարկությունից երեք դար առաջ մի գիտնական և արվեստների գիտակ կազմեց աշխարհի ամենազարմանալի հրաշալիքների ցուցակը: Հարկ է նշել, որ նրա կարծիքով հրաշալիքները գտնըվում էին միայն Ալեքսանդր Մեծի կայսրության սահմաններում: Դրանք հաշվըվում էին կանոնական յոթ թվով, որին արդեն այն ժամանակ հրաշագործ նշանակություն էր տրվում: Բոլոր հրաշալիքները ձեռակերտ էին, դրանցից հինգը ստեղծվել էին շատ վաղ ժամանակներում, որոնք նույնիսկ մ. թ. ա. 3-րդ դարում հին էին համարվում: Այսպիսով, անտիկ գիտնականն իր ցուցակում ընդգրկել էր եգիպտական բուրգերը, Շամիրամի կախովի այգիները Բաբելոնում, Օլիմպիական Զևսի արձանը, որ քանդակել էր Ֆիդիասը, «ռոդոսյան հսկայական կոթողը», Ալեքսանդրյան փարոսը, Արտեմիսի տաճարը Եփեսոսում, դամբարանը Հալիկառնասոսում: Վերջին երկուսը ավելի շատ տեխնիկայի գլուխգործոցներ էին, քան թե արվեստի, դրանք կառուցվել էին շոյելու համար հելլենների հպարտությունը: Վերջերս նըվաճված Արևելքի աչքին այդ հսկայական կառույցները պետք է հելլենական քաղաքակրթությունը հավասարեցնեին եգիպտականին:

Աշխարհի առաջին հրաշալիքը բուրգերն են, որոնք կարիք չունեն ներկայացվելու, քանի որ բոլոր յոթ հրաշալիքներից միայն դրանք են պահպանվել մինչև մեր օրերը: Խորհրդավոր բուրգերը, սկսած Հերոդոտոսի ժամանակներից, Եգիպտոս էին ձգում մարդկանց: Մոտենալով Ալեքսանդրիային, հին աշխարհի զբոսաշրջիկները կարող էին նկատել աշխարհի երկրորդ հրաշալիքը մայրցամաքից հիսուն կիլոմետր հեռավորության վրա, Փարոս կղզում, վեր էր բարձրանում Ալեքսանդրյան փարոսը՝ հսկայական աշտարակը: Փարոսի տեսքը առավել ֆանտաստիկ էր, եթե ճանապարհորդները Ալեքսանդրիա էին ժամանում գիշերով. բարձր սև երկնքում բոցկլտում էր ահռելի խարույկը՝ փարոսի վերին հարկում վառվում էին խեժի մեջ թաթախված ծառաբները:

Իսկ ահա Բաբելոն հին աշխարհի զբոսաշրջիկները չէին այցելում, չնայած անտիկ ժամանակներում այդ քաղաքը անվանում էին հեքիաթային: Այն հռչակված էր հրաշալի պալատներով, կախո-

# ԱՇԽԱՐՀԻ 7 ՀՐԱՇԱԼԻՔՆԵՐԸ




վի այգիներով, ոռոգման ցանցով, քանդակագործության գլուխգործոցներով, բազմերանգ կերամիկայով: Քաղաքը անկում ապրեց մ. թ. ա. 275 թվականին, երբ Ալեքսանդր Մեծի զորավարներից մեկը, ստանալով կայսրության այդ մասը, որոշեց մայրաքաղաք հիմնել մի ուրիշ տեղում: Լքված Բաբելոնը դանդաղ, բայց անխուսափելիորեն մեռնում էր, հրաշագեղ պալատները աստիճանաբար անկում էին ապրում, ոռոգման ցանցը շարքից դուրս էր գալիս: Արդյունքում՝ հինավուրց մայրաքաղաքից մնացին միայն հիշողություններ:

Աշխարհի մնացած բոլոր հրաշալիքները հելլենիստական ծագում ունեին: Օլիմպիայում և ողջ Հելլադայում արվեստի ամենահարգի ստեղծագործությունը համարվում էր Զևսի քանդակը, որը ստեղծել էր Ֆիդիասը: Արձանի բարձրությունը 18 մետր էր: Զևսը նստած էր բրոնզաձույլ և սև փայտից պատրաստված գահին՝ դրվագազարդված փղոսկրով և ոսկով, նկարազարդված և ծածկված թանկարժեք քարերով: Զևսի վրա թիկնոց կար, այն ցած էր կախվում մի ուսից, ձուլված էր մաքուր ոսկուց և ծածկված էր թանկարժեք քարերով: Աստվածների աստծո մորուքն ու մազերը նույն կերպ էին ձուլված և օծված: Մարմնի այն մասերը, որ երևում էին թիկնոցի տակից՝ գլուխը, ոտքերը, իրանը, ձեռքե-

րը, քանդակված էին փղոսկրից: Արձանից ոչ հեռու գտնվող բրոնզե սկահակը ցույց էր տալիս այն տեղը, որտեղ ընկել էր Զևսի ուղարկած կայծակը Ֆիդիասին՝ ի նշան այն բանի, որ նա գոհ էր վարպետի կատարած աշխատանքից:

Հատուկ մարդիկ էին զբաղվում աստվածային քանդակով, օծում ձիթապտղի յուղով, որպեսզի այն ավելի երկար պահպանվեր: Եզակի քանդակը որոշ ժամանակ անց տեղափոխվեց Կոստանդնուպոլիս, որտեղ էլ կործանվեց հրդեհի ժամանակ: Զարմանահրաշ քանդակի պատկերը մեզ է հասել հունական հին դրամների շնորհիվ:

Փոքր Ասիայի ափերին փռված էր Եփեսոս քաղաքը, որը հռչակված էր Արտեմիսի հրաշագեղ տաճարով: Այն համարվում էր Հելլադայի ամենամեծ և ամենահարուստ տաճարներից մեկը:

Մ. թ. ա. 356 թվականի հենց այն նույն գիշերը, երբ աշխարհ եկավ Ալեքսանդր Մեծը, մի ոմն Հերոստրատոս, որ ցանկանում էր ամեն գնով անմահանալ պատմության մեջ, հրդեհեց տաճարը: Ասում են, որ դա նրան հաջողվեց, որովհետև Արտեմիս աստվածուհին մի քանի ժամով լքել էր տաճարը, որպեսզի ներկա գտնվի ապագա մեծ զորավարի ծնունդին: Կրակից փրկված քարերը մոտակա վանքերի վանականները օգտագործեցին շինարարության համար, իսկ ավելի արժեքավոր մնացորդները այժմ կարելի է տեսնել Լոնդոնի բրիտանական թանգարանում:

Այնտեղ կարելի է տեսնել նաև ֆրիզի մակերևույթը, որտեղ պատկերված է ճակատամարտը ամազոնուհիների հետ՝ հալիկառնասոսյան դամբարանի խղճուկ մնացորդները: Մավսոլոս արքայի դամբարանը կամ գերեզմանը կառուցվեց նրա այրու՝ Արտեմիսիայի պատվերով: Այդ կին տիրակալը մտավ պատմության մեջ՝ շնորհիվ Հռոդոս կղզու բնակիչների դեմ ռազմածովային գործողությունների ժամանակ ցուցաբերած իր բացառիկ ընդունակությունների: Բացառված չէ, որ մարդկության պատմության մեջ դա միակ կին ռազմիկն էր, որ փայլուն ընդունակություններ ցուցաբերեց ռազմածովային ստրատեգիայում: Մարմարե դամբարանը, որ զարդարված էր անթիվ սյուներով և հրաշալի քանդակներով, Հելլադայում հռչակված էր որպես աշխարհի ամենաշքեղ դամբարաններից մեկը, և նրա անունը հոլովվում էր աշխարհի շատ լեզուներով: Դամբարանը անկում ապրեց օսմանյան լծի ժամանակ:

Անցավ մի քանի դար: Հռոդոսցիները, որ այդքան շատ էին տառապել վեհաշուք այրու ռազմական խորամանկություններից, ձեռք բերեցին հարստություն և հզորություն: Նրանք որոշեցին ստեղծել աշխարհի իրենց հրաշալիքը՝ արվեստի անսովոր ստեղծագործություն, և պատվիրեցին մի հսկայական արձան: Ըստ մտահղացման՝ հռոդոսյան հսկա արձանը իր չափերով պետք է գերազանցեր մինչ այդ եղած բոլոր հայտնի արձանները: Այն ստեղծվեց և, իրոք, ահռելի չափեր ուներ: Այդ են վկայում բրոնզե հսկան պատկերող փորագրությունները: Սակայն արձանը կանգուն մնաց ընդամենը մի քանի տասնամյակ, որից հետո քայքայվեց: Որոշ աղբյուրների վկայությամբ՝ ինչ-որ մի վաճառական արձանի կտորները բարձեց ինը հարյուր ուղտերից կազմված քարավանին և հետո նորից վերստեղծեց հսկայական արձանը, որը գլխին ուներ ոսկե շողերով թագ, իսկ ձեռքին՝ հավերժ վառվող ջահը, և անվանեց այն Հելիոս՝ արևի թագավոր:

Այն ժամանակներից, ինչ ստեղծվել էր հանճարեղ ցուցակը, անցել են դարեր: Ոչ ոք չի առարկում հին գիտնականի և արվեստների գիտակի ընտրության արդարացիությանը: Մեր օրերում վիճում են միայն մեկ հարցի շուրջ՝ ո՞րն է «աշխարհի ութերորդ հրաշալիքը»:

Յոթ գիտնականների, արվեստագետների, փիլիսոփաների առաջարկվել էր կազմել ժամանակակից «աշխարհի յոթ հրաշալիքների» ցուցակը: Պատասխանները տարբեր էին՝ պենիցիլինը, Կորբյուզեի պալատները, Վեներայի մակերևույթի վրա սովետական զոնդը, Մոսկվայի մետրոն, Ֆելինիի «Ամարկորդ» ֆիլմը, Ստրավինսկու «Սրբազան գարուն»-ը, սկաֆանդրը, որով մարդը քայլեց լուսնի վրա, Պիկասոյի նկարները, Դիսնեյլենդը: Կային և ուրիշ առաջարկություններ՝ Հիրոսիման, Բոկասի ոսկե գահը՝ որպես խորհրդանիշ եղեռնագործության: Իսկ փիլիսոփա Ջուլիո Ջորելլոն հայտարարեց. ամենազարմանալի հրաշքն այն է, որ չնայած բոլոր պատերազմներին, սարսափելի հիվանդություններին, շրջակա միջավայրի աղտոտմանը, մարդկությունը դեռ կենդանի է և ուզում է ապրել:

Ընդամենը տասներկու տարի...

Եվ մենք արդեն կապրենք այդ բաղձալի երրորդ հազարամյակում:

Տասներկու տարի, նույնիսկ ավելի քիչ, քան ես ապրել եմ այս աշխարհում: Դժվար է պատկերացնել, որ ես կլինեմ երեսուն տարեկան, արդեն կյանքում իմ տեղը գտած մի անձնավորություն:

Ինչպիսին կլինենք մենք՝ երրորդ հազարամյակի բնակիչներս: Եկեք երազենք, չնայած որ ոչ միշտ է մարդկային երևակայությունը կարողանում ընթանալ իրականության համաքայլ:

Տասներկու տարի. քի՞չ է արդյոք, թե՞ շատ:

Հուսամ, որ այդ տարիների ընթացքում ժողովուրդները կհասկանան միմյանց, որ տիեզերք կթռչեն ոչ թե այն զինելու, այլ նոր բանական էակներ գտնելու համար:

# Ինչպիսին կուզենայի լիներ քաղաքակրթությունը



# թվականին

Այժմ մենք հպարտանում ենք, որ մեր հայրենակցի՝ Ծավարշ Կարապետյանի անունով է կոչվում մի հեռու, հեռավոր մոլորակ, որը գուցե անզեն աչքով տեսանելի էլ չէ: 2000 թվականին հայ ժողովրդի մի խումբ ուստրեր ու դուստրեր թող թռչեն այդ մոլորակը: Նրանք իրենց հետ կտանեն խաղողի որթ և դեղձենի, և այն հեռավոր մոլորակի արծաթագույն, իսկ գուցե նարնջագույն (ինչպես երևի Մարսինն է) հողում կաճեն ոսկեհատիկ խաղող ու անուշաբույր դեղձ:

Իսկ մե՞նք՝ երկրի վրա մնացածներս:

Մենք այլևս չենք վախենա դարի հիվանդությունից՝ քաղցկեղից (վերջիվերջո դարն էլ արդեն վերջացած կլինի), չենք վախենա, որ երեկոյան քուն մտնող մարդը կարող է հանկարծ չարթնանալ, որ նրա սիրտը հանկարծ կհոգնի իր միալար աշխատանքից ու կդադարի բաբախելուց: Այլևս ոչ մի հիվանդություն անբուժելի չի համարվի:

Առողջ, ծխախոտի մասին մոռացած մարդիկ լույսի արագությամբ թռչող ինքնաթիռներով կիրակի առավոտյան կմեկնեն Կամչատկա՝ դիտելու հրաբխի ժայթքումը, որն այլևս ոչ ոքի չի վախեցնի: Երեկոյան տուն վերադառնալիս վայրէջք կկատարեն Սառուցյալ օվկիանոսի ափին՝ բևեռափայլով հիանալու:

Սահմանները միայն նշված կլինեն քարտեզներում, և մարդը կմեկնի մեկ այլ մայրցամաք՝ իր ծանոթի ծննդյան տոնախմբությանը մասնակցելու: Կմեկնի, բայց անպայման ետ դառնալու համար, և այլևս Սփյուռքից չենք լսի «Մենք բո-



լորս ալ կարոտախտով հիվանդ ենք». կարոտը կտարրալուծվի, բոլոր հայերը կապրեն Հայաստանում:

Երևանը թաղված կլինի կանաչի մեջ: Մայթեզրերին կծաղկեն ուրցն ու երիցուկը, կբուրեն վարդենիներն ու փշատենիները, Հրազդանի ձորը և Կոնդի բարձունքը կդառնան երևանցիների սիրելի զբոսավայրը: Երևանցին այլևս կարիք չի

ունենա պայքարելու օդի մաքրության համար:

Երեխաները կսովորեն հարմարավետ, լավագույն էլեկտրոնային հաշվիչ մեքենաներով ապահովված դպրոցներում:

Իշխանը Սևանում իրեն իսկապես իշխան կզգա, և այլևս հարկ չի լինի մըտահոգվել ամդահա լեռների գրկում ապրող գեղեցկուհու բախտով:

Բայց դեռ պետք է ապրել տասներկու տարի, պահպանել այս միակ, անկրկնելի երկիրը: **ԱՆԱՀԻՏ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ**

**Եղ. Չարենցի անվ. դպրոց, 10-րդ դաս.**

Տասներկու տարի է բաժանում մեզ 2000 թվականից: Դա շատ կարճ ժամանակ է՝ ուղղելու մարդկության կողմից թույլ տրված սխալները:

Այժմ մամուլից ծանոթանալով իմ երկրի՝ Սովետական Միության, իսկական, ռեալ պատմությանը, համոզված եմ, որ դեմոկրատիայի ու հրապարակայնության պայմաններում չեն կրկնվի ոչ 1915 թ. ցեղասպանությունը, ոչ 1937 թ. ռեպրեսիաները, ոչ 1986 թ. չեռնոբիլյան ողբերգությունը, ոչ 1988 թ. Սումգայիթի դեպքերը:

Ես ուզում եմ հավատալ, որ վերջ կըտըրվի սպառազինման վազքին, որ մեր փոքրիկ Երկիր մոլորակում կտիրեն խաղաղություն, ազգերի փոխըմբռնում, մըշակութային կապեր:

Ես ուզում եմ հավատալ, որ չեն լինի Սևանի ու Բայկալի, Խոսրովի անտառների ու Արալի լճի, հայկական ատոմակայանի պրոբլեմները:

Ես ուզում եմ հավատալ, որ այսօր ըստեղծված շատ ու շատ ֆոնդեր՝ խաղաղության, երեխաների, Սևանի փրկության, վաղը՝ 2000 թվականին հարկավոր չեն լինի:

Մոտ է, շատ է մոտ 2000 թվականը:

Չմոռանանք, որ աշխարհ ենք եկել մեր հայրերի, պապերի ու պապպապերի շնորհիվ և լիովին վայելում ենք այն ամենը, ինչ ստեղծել են նրանք:

Սուրբ Մաշտոցն ու Սահակը, Մեծն Վարդանը, քերթողահայր Խորենացին մեզ ավանդել են հող հայրենին, լեզուն, ազգը, հավատը:

Ուրեմն՝ պատվով այն պահպանենք և հանձնենք սերունդներին:

**ՄԱՐՈ ՄՈՎՍԻՍՅԱՆ**

**Եղ. Չարենցի անվ. դպրոց, 8-րդ դաս.**

Մինչև 2000 թվականը մնացել է տասներկու տարի: Դա նշանակում է, որ տասներկու անգամ էլ մեր քաղաքակիրթ մոլորակը կպտտվի հրակարմիր Արեգակի շուրջը, և Երկիր կժամանի մեր թվարկության քսանմեկերորդ դարը: Ինչպիսի՞ նվաճումներով մարդկությունը կթևակոխի քսանմեկերորդ դար: Այսօր անհասանելի թվացող ինչպիսի՞ բարձունքներ կհաղթահարվեն քսանմեկերորդ դա-

Նկարները՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ



րում...

Մեր քաղաքակրթության թերևս ոչ մի դարաշրջան չի ընթացել ինտենսիվ զարգացման այնպիսի ուղիով, որով ընթանում է դեռևս իր իրավունքների մեջ գտնվող քսաներորդ դարը: Ոչ մի դարաշրջանի պատմություն հագեցված չի եղել հիշարժան այնպիսի հայտնագործություններով, դեպքերով ու իրադարձություններով, ինչպես քսաներորդ դարի պատմական ժամանակաշրջանը: Արդարացիորեն քսաներորդ դարը անվանում են տեխնիկայի և պատմական խոշոր իրադարձությունների դար, նաև... ատոմի դար: Էլեկտրականությունն ու ավտոմեքենան, սովետական առաջին պետության կազմավորումը լուսավոր քսաներորդ դարի նույնքան հարազատ զավակներն են, որքան... ատոմային ու ջրածնային ռումբերը, վիդիո հիվանդությունը, սառը պատերազմն ու սպառազինությունների մրցավազքը: Կուզենայի



ռումների, քան ձերը, որովհետև մենք երբեք չենք պատերազմել ու պատռակտվել: Մենք չգիտենք, թե ինչ բան են նախանձն ու եսամոլությունը: Երկիր մոլորակի բնակիչներ, վերացրեք պատերազմ ու պառակտում հասկացությունները ձեր մոլորակի երեսից և դուք երջանիկ կլինեք»:

**ԳՈՀԱՐ ՂԱՆԹԱՐՁՅԱՆ**

**Երևան, № 114 դպրոց, 10-րդ դաս.**

Ամեն ոք իրեն բարեկիրթ ու քաղաքակիրթ է պատկերացնում: Բայց շատ են այն «բարեկիրթները», որոնք քաղքենիաբար հայտարարում են, թե չեն սիրում ազգային երգն ու երաժշտությունը, երեխաների հետ մայրենի լեզվով չեն խոսում: Նրանք պաշտում են այն, ինչ միայն օտարինն է:

Ես շատ տղաներ ու աղջիկներ գիտեմ, որոնք լրջորեն զբաղվում են երաժշտությամբ, ձեռք բերում արվեստի այդ ճյուղին վերաբերող հարուստ գիտելիքներ: Դա սքանչելի է: Արվեստը բարերար ներգործություն է թողնում մարդկանց վրա, բարձրացնում է ընդհանուր կուլտուրան, անգամ բարեփոխում բնավորությունը: Սակայն երաժշտասերների մեջ քիչ չեն նաև նրանք, ովքեր հրապուրվում են միմիայն արտասահմանյան աստղերով և «դիսկո» երաժշտությամբ: Բայց դա միայն մոդայամոլության տուրք է: Դրա մյուս վառ օրինակը պճնամոլությունն է: Պճնամոլ են նրանք, ովքեր մոդայով և լավ հագնվելը դարձրել են գրեթե կյանքի նպատակ: Դա քաղքենիություն է, հոգու աղքատության արտահայտություն: Սա է, որ մարդկանց խանգարում է ճանաչել կյանքի իսկական արժեքները: Մոդան մեր քաղաքակրթության մի մասն է, և պետք չէ չարաշահել այն:

Կուզեի մարդկանց տեսնել քաղքենիությունից թոթափված, այո, թոթափված, որովհետև սա էլ ինձ թվում է, մի մեծ լուծ է մարդկանց ուսերին, որից գուցե ոչ այնքան հոգնում, որքան հիասնում են ոմանք:

Կուզենայի, որ նախապատվությունը տրվեր օպերային, թատրոնին և կինոյին, ոչ թե ռեստորաններին ու խորտկարաններին, մարդիկ սիրեին արվեստն ու գրականությունը: Եվ որքան վիրավորական է պատկերասրահների, համերգային դահլիճների կամ էլ կուլտուրայի տը-

որ նախքան քսանմեկերորդ դար թևակոխելը աշխարհի երեսից վերանան ատոմային ռումբ, պատերազմ, ճնշում հասկացությունները, որ լուծվեն այսօր արդեն մեծ սրություն ունեցող էկոլոգիական պրոբլեմները, որ Երկիր մոլորակը զոհ չգնա իր իսկ քաղաքակրթության նվաճումներին, որ արդարացի լուծում ստանան քաղաքական մի շարք ցավոտ հարցեր, այդ թվում նաև համայն աշխարհի հայության կողմից բարձրացված հայկական հարցը...

Եվս մի երազանք ունեմ: Ցանկանում եմ այլմոլորակային թռչող ափսեն վայրէջք կատարի Երկրի վրա, այնտեղից դուրս գան այդ ապակյա կանաչ աչքերով, մետաղահնչյուն ձայնով այլմոլորակայինները և ասեն. «Մենք այսինչ գալակտիկայի, այսինչ մոլորակի ներկայացուցիչներն ենք: Մեր քաղաքակրթությունը հասել է ավելի խոշոր նվա-

ների դատարկությունը:

Իմ պատկերացմամբ՝ ընդամենը տասներկու տարի հետո մեզանից յուրաքանչյուրը երաժշտության, նկարչության կամ որևէ այլ խմբակի պետք է մասնակցի. ոչ թե մոդայամոլության համար, այլ՝ ըստ հոգևոր պահանջի, ըստ ընդունակության, ըստ ցանկության:

Մարդիկ այնքան նրբանկատ կլինեն, որ անտեղի չեն վիրավորի մարդու վսեմ զգացմունքը՝ ինքնասիրությունը: Թե չէ՝ այսօր ամեն մի քայլափոխի պետք է պատրաստ լինել մի նոր վիրավորանքի, քանի որ ամեն մարդ իր անձնական անտակտությունն ու գռեհկությունը բարդում է դարաշրջանի վրա: Այո, սա էլ է գալիս քաղաքակրթության պակասից:

Դարերի, հազարամյակների խորքից եկող հայ մշակույթն ու արվեստը կարծես դոփում են տեղում, ժամանակակից ոչ բոլոր մարդիկ գաղափար ունեն այսօրվա գեղանկարչի, քանդակագործի, ճարտարապետի կատարած աշխատանքների կամ անձի մասին ընդհանրապես: Պատճառը սիրո պակասն է այդ բաների հանդեպ:

Արդեն քանի տասնամյակ է, ինչ խարխլված Կոնդն է «զարդարում» Երևանի անկյուններից մեկը՝ «Դվին» հյուրանոցի հարևանությամբ, ու չգիտես, թե այդ փլված շենքե՞րն են հյուրանոցը ստվերում, թե՞ հյուրանոցը՝ տները: Համոզված եմ, որ 2000 թիվը բախտորոշ կլինի Կոնդի ավերակների համար և «Դվինի» կողքին վեր կխոյանա մի գեղեցիկ համերգային սրահ՝ «Մուշ» անվամբ:

Ու թող 2000 թվականին այնքան շատ լինեն մշակույթի օջախները, որ հեռուստացույցը մղվի երկրորդ պլան, և մարդը հանգստանա այդ ավերիչ ճառագայթումից:

Թող 2000 և հետագա թվականներին սահմաններ չլինեն, թող աշխարհի բոլոր մարդիկ անընդհատ շփման մեջ լինեն, որը և մարդկանց, իրոք, քաղաքակիրթ կդարձնի: Մարդը հնարավորություն կունենա մոտիկից ճանաչելու իր հարևան ազգին, նրա մշակույթն ու արվեստը: Իսկ այդ բոլորը կիրագործվի, եթե միշտ խաղաղություն, անձի ազատություն լինի աշխարհում:

**ՀԱՍՄԻԿ ՄԿՐՏՉՅԱՆ**

**Եղ. Չարենցի անվ. դպրոց, 9-րդ դաս.**

## *Սեմա (1910~1940)*

Սեման (Գեղամ Աթմաճյան) ծնվել է սևծովյան Բաֆրա քաղաքում: Հինգ տարեկան էր, երբ մահաբույր փոթորկվեց երկինքը, որի ներքո անցան նրա կյանքի առաջին և ամենադժվարին, հեծեծանքներով լի տարիները՝ աքսորում և որբանոցում: Կորցրած ծննդավայրի կարոտով մորմոքուն, պանդխտության, թափառիկ կյանքի չսպիացող, օրավուր խորացող նրա վերքերը բարբարոսաբար տեղահանված մի ողջ ժողովրդի արյունոտ տարեգրության էջերն են: Սեման «սգավոր հուշերու անհանգըրլան» ուղևորներից մեկն էր, «վաղվան համար լիակյանք» ապրել տենչացողներից, բայց նրա կյանքը ցավալիորեն կարճ տևեց, նա զոհվեց երկրորդ աշխարհամարտի տարիներին, ֆրանսիական բանակի կազմում՝ երեսուն տարին չբոլորած, կրծքի տակ տենչավառ մի սիրտ՝ «նոր իղձերով բեռնավոր»...

ԱՐԹՈՒՐ ԱՆԴՐԱՆԻԿՅԱՆ

## Ջմեռը ցուրտ մշուշով

**Այսօր ուրախ ու գոհ եմ: Պզտիկներու ծիծաղեն**
**Ու նոր հարսի պես պճնած կաղանդի սա սուրբ թառեն**
**— Որու ճյուղեն առկախված մեզ կը ժպտին ընծաներ—**
**Խաղաղություն մ՛ անսահման կը բարձրնա սիրտս ի վեր:**

**Կը բարձրնա սրտես վեր ու կը հպի հոգիիս**
**Մանկութենես հուշ մը հին, բայց չի հուզեր հիմա զիս.**
**Քանզի նոր կյանքն է ձգած արմատներն իր սրտիս խոր:**

**Ամանորյան նոր կամքով, նոր իղձերով բեռնավոր,**
**Հին տարիեն՝ նոր տարի, խոլ վերելքի ճիգով մենք**
**Կիսատ թողված հույսերու իրագործման կը դիմենք...**



## Ապրիլի 11—24

Մենք սգավոր հուշերու անհանգրվան
ուղևոր,
Այսօր հպարտ ահա ձեր փառքին առջև
կ՚առնենք կանգ.
Մեր երեկին համար հեգ, վաղվան համար
լիակյանք,
Ձեր շիրիմին վրա դնելու անմոռուկի
փունջ մը նոր:

Դուք մեր շքեղ այսօրին հարության երգը
եղաք.
Գորշ ամպերուն ընդմեջեն մեր սրտերուն
մեջ սուզվող
Բազմադարյան տենչերու արեգնային պուտ
մը շող,
Մեր սրտին խոր դեռ հնչող հույսերու
ծով արձագանք:

Ապրիլյան սև իրիկունով մ՚իր թուփերեն
սիրավետ
Խլված վարդերն եղաք դուք մեր
պարտեզին հայրենի,
Որդ մեր հոգվույն մեջ՝ տխուր կ՚իյնա
ժպիտն արևի…

Որքան անշուշտ կուզեիք այսօր ըլլալ
մեզի հետ,
Մեր հույզերով տառապիլ և ժպտիլ մեր
հույսերով
Ու հին երազն— իրական այսօր— գրկել
կույս սիրով…

## Հայրենի կարոտ

Աքաղաղն է, լռության մեջ կը կանչե,
Ու կը հիշեմ հայրենի տունն իմ ավեր,
Մինչ ես օտար, օտարներեն կարեվեր
Կը տառապիմ անմխիթար ու անտեր…

Ու կանչ մը հեռուեն ինձ կը հասնի,
կարծես ան
Փըթթած՝ ինձ գար գյուղակներեն հայրենի,
Կարոտագին հոն կը նայիմ… օտարի
Պատնեշն է ցից, որ սրտիս դեմ կը կանգնի:

Ջրկված հոգիս հայրենական իր տունեն,
Պանդխտության վիհերն ի վար կը հակի…
Մինչ կը տանջվի հոգիս անհուն կարոտեն,
Աքաղաղն է, լռության մեջ կը խոսի…

Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ



Ամեն ինչ սկսվեց մանկության հին սնդուկից, որի մեջ մի օր տնեցիներից թաքնվեց, իսկ երբ դուրս եկավ, աշխարհն արդեն փոխվել էր: Սա, իհարկե, ես եմ հնարում, թեև բացառված չէ, որ հենց այդպես էլ եղած լինի: Հնարում եմ, որպեսզի մոտավոր պատասխան տամ Սերգեյ Փարաջանովի առեղծվածին, հնարում եմ, որովհետև մարդիկ չեն սիրում անհասկանալի բաներ և միշտ շտապում են դրանց անուններ տալով հասկանալի դարձնել. սա աթոռ է, սա ծաղիկ է, սա երջանկություն է, սա մարդ է... Մարդիկ սովորաբար անուններ են տալիս վերջակետ դնելու պես, իսկ Փարաջանովը բոլոր իսկական արվեստագետների նման անհանգիստ մարդ է, և նրա համար սնդուկը սնդուկ չէ սոսկ, այլ գուցեև մանկություն, կարի մեքենան կարի մեքենա չէ սոսկ, այլ ուղղակի՝ հիշողություն: Բայց Փարաջանովի մասին այսպես արտահայտվելը ևս մեզ իրերի ու երևույթների սոսկ անվանարկում է թվում՝ ինչ-որ կերպ վերջին հասնելու և հանգստանալու համար:

Փ ա ր ա ջ ա ն ո վ ի առիթով պետք է այլ կերպ ասել. սնդուկը մանկություն է, հետո նոր սնդուկ, կարի մեքենան հիշողություն է, հետո նոր կարի մեքենա: Ահա այսպես գուցե ավելի ճիշտ է: Թեև ո՞վ գիտի, գուցե Փարաջանովը գտնում է, որ չարժե ամեն ինչ այսքան բարդացնել, ապրում ենք մեր բաժին կյանքը, և ի՞նչ կարիք կա ամեն տեղ խորհուրդ ու մեծ իմաստ փնտրել. այս կոճակն այս պաստառի վրա գեղեցիկ է,




Ռետրո

ու վերջ, լաթի կտորն այս տախտակի վրա ոնց որ թե ավելին է, քան լաթը, կարծես գույն լինի, ու վերջ:

Բայց, իրոք, ինչո՞ւ են մարդիկ սիրում իրերի էությունը կաղապարել ինչ-որ անուններով: Ահա պարզ հասկանալի է, որ այս լաթը կարող է նաև գույն լինել, ուրեմն էլ ինչո՞ւ միայն ու միայն «լաթ»:

Անբավարարվածության զգացում կա Փարաջանովի մեջ. նրան չի բավարարում այս «միայն ու միայն»-ը, միայն մեկ աշխարհը, այդ աշխարհի հայտնի երևույթներն ու առարկաները: Եվ նա մի երևույթի մեջ փնտրում է երևույթներ, մի առարկայի մեջ ուրիշ առարկաներ, որովհետև, իրոք, աշխարհում աշխարհներ կան թաքնված, իրի մեջ՝ իրեր, երևույթի մեջ՝ երևույթներ: Եվ որպեսզի գտնի մեկի մեջ թաքնված բազմաթիվը, նա սկզբում փորձում է անվանազրկել իրը, երևույթը, այն դուրս բերել Անունի կաղապարից: Դա մի տեսակ «փախուստ է» կոնկրետ իրավիճակից, կոնկրետ իրից, կոնկրետ դրությունից: Ինչո՞ւ է բարկացած մարդը ափսեն զարկում հատակին ու փշրում: Որովհետև այդ պահին նրան զայրացրել է ինչ-որ կոնկրետ իր, իրավիճակ, որը զանազան մասնիկներից ի մի է հավաքվել իրեն ոչ այնքան հաճելի վերջնատեսքով: Եվ ահա խնդրեմ՝ ափսեն այլևս չկա, կան ինչ-որ մասնիկներ, կտորտանքներ: Այլևս չկա մեկ-ը, կա բազմաթիվ-ը: Եվ այդ բազմաթիվ անանուն կտորտանքների մեջ Փարաջանովը գտնում է ծաղկի մի թերթիկ, մարդկային արցունքի մի կաթիլ, ձկան աչք...

Այս անվանարկումը կրկի՞ն անհասկանալիության վախն է: Թերևս: Բայց ինչո՞վ է առանձնահատուկ այս անվանարկումը: Մենք՝ հասարակ մահկանացուներս, ծաղկաթերթին ենք ծաղկաթերթ ասում, իսկ արվեստագետը փշրված ափսեի ինչ-որ մի կտորին: Դուրս է գալիս, որ ստախոսնե՞ր են բոլոր արվեստագետները: Ի՞նչ է, մարդկության պատմությունը ստախոսներին մեծարելու, հուշարձաններ կանգնեցնելու պատմությո՞ւն է: Այստեղ «մեր խոփը քարի՞ն առավ», ինչ է: Բայց՝ ոչ: Եթե կա բնությունը, ուրեմն բնանկարը ստախոսությո՞ւն է, եթե կա մարդու դեմքը, ուրեմն դիմանկարը ստախոսությո՞ւն է: Այդպես մտածելու դեպքում մենք կամա-ակամա հավասարման նշան ենք դնում բնության տեսարանի և այդ տեսարանը պատկերող բնանկարի միջև, ինչը անառարկելիորեն սխալ է:

Ուրեմն՝ աշխարհում իրերն ու երևույթները բաժանվում են երկու մասի՝ առաջին՝ մեր աշխարհում ապրող և երկրորդ՝ արվեստագետի աշխարհում ապրող (իհարկե, իրերի ու երևույթների միակ դասակարգումը չէ սա ամենևին): Ուրեմն՝ արվեստագետների ու նաև Փարաջանովի առեղծվածի գաղտնիքն այն է, որ նրանք կարողանում են առաջին աշխարհից իրերն ու երևույթները փոխադրել երկրորդ աշխարհ: Եվ ինչը որ անուն ունի առաջին աշխարհում, հաճախ անվանազրրկվում է երկրորդ աշխարհում, իսկ այն, ինչը անվանազրկված է առաջին աշխարհում, փշրված, շատ հնարավոր է, որ անուն ստանա երկրորդ աշխարհում: Եվ ապակու փշրանքների մեջ ինչ-որ ծաղկաթերթիկ է գտնվում, մի գեղեցիկ տերև: Իրերի անվանակոչությունը արվեստագետների աշխարհում անհասկանալիություն, վախի հետևանք չէ. ո՞վ ինքն իր ձեռքով իրեն վախի ոլորտը կնետի: Իսկ եթե իրոք այդ վախի ոլորտը գոյություն ունի և արվեստագետն էլ իրեն նետում է դրա մեջ, ուրեմն նա խիզախում է:

Մանկության սնդուկի մեջ Փարաջանովը պահում է իր մանկության փշրանքները (գուցե փշրված մանկության փշրանքները). տիկնիկներ ու փայլփլուն կոճակներ, արձանիկներ ու տնածառի խաղալիքներ, նկարներ ու ձեռնոցներ: Այս փշրանքների համադրմամբ նա վերականգնում է մանկության դեմքը:



## ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

## Իմ սիրած եղանակը

**Գարունն եմ սիրում ես աշխարհում:**
**Այդ եղանակը**
**Իմ սիրտն ու հոգին է,**
**Երգն ու տաղն է,**
**Իմ լավ կյանքն է:**
**Այդ գարնան արևից**
**Ծաղկում են ծառն ու ծաղիկը,**
**Հոգիս է ծաղկում:**

## Անտառի տնակը

**Անտառում մի տնակ**
**Կանգնած էր անշարժ,**
**Կարծես լույս էր վառվում**
**Նրա խոր սրտում:**
**Եվ կարծես նա երգում էր՝**
**Կանգնած իր ազատ տեղում:**
**Բայց երբ մոտեցա,**
**Տեսա, որ այնտեղ մարդիկ են երգում:**
**Նրանց երգն անուշ,**
**Խավարը՝ տխուր:**

**ՀԱՅԿ ԿԱՐԺԻԿՅԱՆ**
**Երևան,**
**Կրուպսկայայի անվ. դպր. 3-րդ դաս.**



# ԵՐԵՎԱՆ

Խոսք և երաժշտություն՝
ԼՈՒՍԻՆԵ ՄԽԻԹԱՐՅԱՆԻ



Դարերից եկած
Եվ դարեր ապրած,
Դու սիրտ հայության,
Քաղաք Երևան

Կրկներգ.

Հայի հետ ծնված,
Հայի հետ սնված,
Հայի օթևան,
Քաղաք Երևան:

Շատ հողմեր եղան,
Շատ տանջանք տարար,
Բայց միշտ կանգուն ես,
Իմ լավ Երևան:

Կրկներգ.

Հայի հետ ծնված,
Հայի հետ սնված,
Հայի օթևան,
Քաղաք Երևան:



ՆՎԵՐ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ, 14 տ.
Ստեփանակերտ

ԳԵՎՈՐԳ ՍԱՐԳՍՅԱՆ Ստեփանակերտ,
7-րդ դաս.



## ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

# Ջրույց պանթեոնում

Այց Տերյանի շիրմին

… Եվ ով իմանա,
Քո սիրտը հիվանդ,
Որ անկարող եղավ .կյանքի ուժգին
հարվածներին
Ու մշտամոլոր աշունների հասցրած
թախիծներին,
Գոնե մի փոքր դիմադրեր (անօգուտ
թեկուզ)…
Բայց եկել, ծվարել է գերեզմանոցի այս
եզրին
Ու դարձել սև փեշը նրա:
Այս լռության մեջ
Քո աշուններն էլ եմ տեսնում ես հիմա
Եվ խենթ տերևի պարը մոլեռանդ,
Քամու արշավն եմ պատկերում հիմա՝
Գրքիդ էջերից պոկված ու հանված,
Սրտիդ պես հիվանդ, դալուկ արևի նման:

Եվ ով իմանա,
Այս պահին գուցե
(Գոնե միայն ինձ համար)
Այստեղ են սկսվում
Եվ հենց այստեղ էլ վերջանում են
Աշնան երգերը,
Բյուրեղի պես՝ թախիծը մաքուր,
Եվ մեղմաձայն վշտի կարուսելը մեծ,
Որ պտտվում, պտտվում, պտտվում է
անվերջ.
Երեկ՝ քեզ, այսօր՝ ինձ,
Իսկ վաղը՝ նրան:
Եվ մտորումները,
Որ լպրծուն լույսի նման
Իմ ուղեղից կաթկթում են մեկ առ մեկ
Քո լույս, քո սուրբ շիրմի վրա,
Ինձնից անկախ, ազատորեն
Թռչել-թռչկոտելով փախչում-գնում են,



ԻԼԻՆԱ ՍՈՒՔԻԱՍՅԱՆ
Երևան

Հետո՝ ոմանք ետ չեն գալիս,
Ինչպես որ դու, երազների
լուսապսակով քո...
Իսկ ոմանք էլ վերադառնում են՝
Իրենց երազախառն փետուրներին տուն
բերելով
Տիեզերքի մթության մեջ կորած,
Հեռուներում մանկան նման անզոր ու
մոլորված
Աշխարհի ծայրը,
Արևածաղկի զամբյուղի մեջ թաքնված ու
անհնազանդ
Բյուրեղի պես մաքուր թախիծը լուռ,
Եվ գարնանացանի հետ շաղ տված
Աշնան երգերն ու տխրահանգ վերքերը բաց,
Եվ անվերջ պտտվելուց հոգնած ու
ձանձրացած,
Սիրտ խառնող մեղմաձայն վշտի կարուսելը
մեծ,
Որ պտտվում, պտտվում, պտտվում է անվերջ,
Երեկ քո, այսօր՝ իմ,
Վաղն էլ՝ նրա հուշերն է մոխրացնելու
Ու թաղելու ժամանակի այս մեծ
Անցուղիում...

Օ, թախծասիրտ հայոց աշուն,
Աշնան արահետում մոլորված,
Հիվանդ սրտից կաթած կաթ մի արյան՝
Արդեն լերդացած, բայց անջինջ մի հետք...
Օ, Նաիրյան երկրի աշնան գուսան—
Սուրբ իմ Տերյան...

ՀՈՎԻԿ ՀՈՎԱՆ
Երևան, № 112 դպրոց, 9-րդ դաս.

●●●

Տես, դրսում ձյուն չէ
Ու ոչ էլ անձրև, ոչ էլ մառախուղ,
Բայց ինչո՞ւ սիրտս տխուր է այսքան,
Եվ ի՞նչ ցրտից եմ ես այսպես դողում...

Այս ի՞նչ սառնաշունչ քամի է այսպես
Անցած-գնացած օրերս թերթում,
Մոլորված ճամփիս հետքերը ջնջում,
Հուշերիս փունջը այսպես ճմրթում:

Տես, դրսում ձյուն չէ
Ու ոչ էլ անձրև, ոչ էլ մառախուղ,
Բայց սիրտս ինչո՞ւ տխուր է այսքան,
Ու ի՞նչ քամի է այսպես սառնաշունչ...

ՌՈՒԶԱՆՆԱ ՊՈՂՈՍՅԱՆ
Երևան, № 185 դպրոց, 10-րդ դաս.

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ




●●●

Ամեն բացվող օրվա հետ
Ինչքան ցավ է նորանում,
Ինչ կարոտ է խորանում
Ամեն բացվող օրվա հետ:
Նահանջում է հուշը ետ,
Ափսոսանքը՝ խորանում:
Ամեն բացվող օրվա հետ
Ինչքան ցավ է նորանում:

●●●

Ծողերն ընկան սարերին
Լուսաբաց է, լուսաբաց,
Ոտից գլուխ լույս հագած՝
Ծողերն ընկան սարերին:
Հանգստություն ցավերին
Ու վերքերին կիսաբաց,
Ծողերն ընկան սարերին,
Լուսաբաց է, լուսաբաց:

●●●

Թե ճամփորդ ես օրերի՝
Մի խճճվիր խոհերում,
Հանգիստ չառնես ձորերում,
Թե ճամփորդ ես օրերի:
Թևը մտիր շողերի
Ու սլացիր միշտ հեռուն,
Թե ճամփորդ ես օրերի՝
Մի խճճվիր խոհերում:

●●●

Լույս է կաթում շառունակ
Արարատի գագաթից,
Ինչպես սաթից, ագաթից,
Լույս է կաթում շառունակ:
Մենք՝ միասին, նա՝ մենակ,
Տրտնջում է իր բախտից,
Հույս է կաթում շառունակ
Արարատի գագաթից:




ԱՆԱՀԻՏ — ԱՆՆԱ ՓԱՅՏՅԱՆ

Նկարը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵՉՕՂԼՅԱՆԻ


Այս խոզուկը սովորական խոզուկ չէր: Եթե դուք նրան գցեիք իր տասնհինգ եղբայրների հետ, որոնք բոլորը ծնվել են նույն գիշերը, և սպասեիք, որ նրանք խառնվեին իրար, մինևնույն է՝ դարձյալ կտարբերեիք անսովոր խոզուկին: Նա ինքը շատ տարօրինակ էր և փոքրիկ կուզ ուներ մեջքին: Այդ պատճառով բոլորը նրան անվանում էին խոզուկ Կուզ:

Այսպիսի սովորություն կա. երբ մայր խոզը լույս աշխարհ է բերում իր ձագուկներին, անմիջապես ծնված խոզուկին անուն է տալիս: Այդ անունները պետք է որ լինեն ցեղի ամենապատվավոր ու հարգված խոզերի անունները:

Այն գիշեր մայրը ծնում էր մեր խո-

ցուկներին: Խոզուկները ծնվում էին շարունակ, և կարծես դրան վերջ չկար: Խոզուկ մայրիկը այնքան էր հոգնել, որ արդեն սկսել էր անիծել իր բախտը: Տասնվեցերորդ խոզուկի ծննդյան հետ Գոնչո ցեղի բոլոր պատվական անունները սպառվել էին, և այդ պատճառով Խոզուկ մայրիկը նկատելով ուղտի սապատի պես կուզը փոքրիկ խոզուկի մեջքին, նրան անվանեց խոզուկ Կուզ: Հետո, ծղոտի վրա պառկած հանգստանալիս հասկացավ, որ ճակատագրական սխալ է թույլ տվել՝ այդպիսի մի անպատվաբեր անուն մտցնելով իր ցեղական անվանացուցակի մեջ:

Այսպես ,ծննդյան առաջին իսկ օրվանից անհաջողությունները սկսեցին ունեկցել խոզուկ Կուզին:

Ասեմ, որ մեր հեքիաթի հերոս խոզուկ Կուզը ոչ մի արտասովոր բան չէր անում. ոչ թռչում էր ծառից ծառ, ոչ բադի պես լողանում էր և ոչ էլ սիրահարվում էր ցանցի մեջ ապրող հավերին, չնայած այն բանին, որ նրանք չափազանց ճերմակ էին, իսկ ճերմակ գույնը, ինչպես գիտենք, անմեղության նշան է:

Այս ամենի փոխարեն, չնայած իր փոքրիկ կուզին, խոզուկը շատ գեղեցիկ էր. իրանը վարդագույն էր, գլուխը՝ փոքր, մռութը կարճ էր ու տափակ և փոքր-ինչ վեր ցցված, որը միանգամայն արքայական հատկանիշ է… Համենայն դեպս՝ այդպես էին նրան հավատացնում հավերը:

Անցնում էր ժամանակը, և մի օր խոզուկը նկատեց, որ ինքը այլևս չի տեղավորվում խոզուկ մայրիկի իրանի տակ: Խոզուկ Կուզը նկատեց նաև իր եղբայրների մեծությունը: Նրանք այնքան էին գիրացել, որ ծանրությունից ընկել էին ծղոտի վրա և կրկնում էին իրենց իմացած միակ բառը՝ խո, խո, խո, որն, ըստ երևույթին, նշանակում է՝ օֆ, օֆ, օֆ…

Այսպես ապրում էին խոզուկները կողք-կողքի պառկած և շարունակ կրկնում էին այդ չարաբաստիկ բառը. խո, խո, խո… Երբ քաղց էին զգում, խոզուկները մի կերպ ելնում էին տեղից, մոտենում կերով լի ամանին, հագենում էին և դարձյալ պառկում:

Խոզուկ Կուզը սարսափելի տհաճություն զգաց այս ամենից: Նա փորձեց, որևէ բան անել, այնպես՝ հոգին թեթևացնելու համար, բայց երբ բացեց բերանը, չգիտես ինչու այնտեղից դուրս թռավ նույն այդ բառերը. խո, խո, խո…

Այսպես սկսվեց խոզուկ Կուզի կյանքի երկրորդ, անսպասելի շրջանը, որը մենք կանվանենք ստորացուցիչ տառապանքների շրջան…

Մի օր խոզուկ Կուզը տխուր պառկած մտածում էր. «Չէ, այսպես չի լինի, պետք է մի բան անել խոզային արժանապատվությունը փրկելու համար, ինչի՞ է նման մեր ապրելու ձևը…»: Վեր կացավ և դուրս եկավ: Դուրս գալով բակ՝ նա ցանկացավ որևէ հետաքրքիր բանով զբաղվել, երբ անկախ իրենից սկսեց դնչով հողը փորել… Թեկուզ և այդպես, մի՞թե դա պարապ պառկելուց ավելի լավ չէ: Այդպես խոզուկը փորելով հասավ ցանկապատին: Եվս մի փոքր փորելուց հետո անսպասելիորեն հայտնվեց ցանկապատից դուրս, գետափին… «Ինչ գեղեցիկ է աշխարհը,— բացականչեց խոզուկն իր շուրջը զննելուց հետո,— գոմում փակված ի՞նչ ենք հասկացել աշխարհից»:

Ապա նետվեց գետը և քիչ հետո դուրս ելավ միանգամայն մաքրված: Նրա վարդագույն մաշկը փայլում էր արևի տակ: Գետում լողացող բադերի մոտից խոզուկն անցավ գլուխը բարձր պահած, հըպարտ կեցվածքով: Նրա կողքից լողալով անցնող մի բադ հանկարծ խոզուկին ձայն տվեց.

— Էյ, հարևան, փառք աստծո, օրերը տաքացել են, և գայլեր էլ չկան, հիմա կարելի է ազատ դրսում գիշերել:

— Այդպե՞ս եք կարծում: Իսկ ես թերթում կարդացել եմ, որ, այնուամենայնիվ, գայլեր երբեմն պատահում են,— պատասխանեց նրան խոզուկ Կուզը:

— Անմիջապես երևում է, որ դեռ շատ միամիտ եք, խոզուկ եղբայր,— ասաց բադը,— մեր բադակտուցային ժողովրդական խոսքն ասում է. «Գայլը տնից չլինի, դրսից չի լինի»: Հիմա ժամանակները փոխվել են:

Խոզուկ Կուզը շատ չխորացավ բադի ասածների մեջ: Նա տուն վերադառնալ չէր ուզում: Եվ ինչի՞ համար վերադառնար: Նոր կյանք կսկսի: Կլինի ազատ, իսկ դա նշանակում է, որ վաղ թե ուշ որոշ բաներ կպարզի այս կյանքում, այ, օրինակ այն, թե ինչպե՞ս են ծառերն ապրում առանց ոտքերի, կամ՝ ի՞նչն է պատճառը, որ երեկոյան դեմ այդքան վախկոտ դարձած արևը լուսաբացին կրկին այդքան քաջ է դառնում… Այս-

պես էր մտածում խոզուկ Կուզը, երբ հանկարծ նկատեց, որ գետի միակ կամրջի վրա մի ավանակ է կանգնած: Նա իր ցեղական ավանդական նշանաբանը՝ «խո, խո, խո»-ն, կրկնելով մոտեցավ ավանակին և հարցրեց.

— Անունդ ի՞նչ է և ինչո՞ւ ես կանգնել միակ կամրջին, որ խանգարե՞ս անցուդարձը:

Ավանակը համարյա առանց խոզուկին նայելու պատասխանեց.

— Կիրթ մարդիկ ինձ ավանակ են ասում, իսկ ոչ այնքան կրթվածները՝ էշի մեկը: Բայց ինձ համար հավասարապես միևնույնն է: Իսկ այստեղ կանգնել եմ, որովհետև կանգնեցնողն այդպես է ցանկացել: Եվ ինձ համար էլ հավասարապես միևնույնն է, թե որտեղ կկանգնեմ:

Խոզուկ Կուզը ակամայից հարգեց ավանակին այդպես սրախոս լինելու համար և որոշեց սիրտը բացել նրա առաջ:

— Եղբայր ավանակ, երևում է դու աշխարհ տեսած ես, ասա, ի՞նչն է պատճառը, որ ինձ իմ հայրական տունն ու վարք ու բարքը զզվելի դարձան: Ծարպակալած և անբան եղբայրներիս հետ ինձ նըվաստացած եմ զգում և ահա մտածում եմ հեռանալ այստեղից:

— Հը,— քմծիծաղեց ավանակը,—ո՞վ է| գլուխդ այդպիսի հիմարություններով լցրել: Մեր անելիքը մեզ բոլորիս պարզ է: Իզուր ես արյունդ պղտորում: Միևնույն է, ոչինչ չես փոխի, և մեր մականունները էլ մշտապես մեզ հետ են. ինձ ասում են էշի մեկը, հավերին՝ անխելք հավ, քեզ՝ կեղտոտ խոզ, կատվին՝ գող կատու... և այդպես շարունակ: Այդպես են ուզեցել՝ այդպիսին են դարձրել մեզ: Դե թող անտառում ապրող խոզին կամ հավին անուն տան: Նրանց միայն մի բան են ասում. վայրի... Էհ, կորածը էլ հետ չես բերի:

— Եղբայր ավանակ, քեզ լսելիս մորթվելու ցանկություն է առաջանում: Չպետք է այդքան հուսահատվել: Միգուցե ես դեռ կարողանամ որևէ բան փոխել: Դրա համար ավելի լավ է ինքս իմ ճշմարտությունը փնտրեմ...

Այս ասելով, խոզուկն անցավ կամուրջը և շարունակեց իր ճամփան:

Գնում էր խոզուկը՝ առանց շուրջը նայելու: Մտքերի մեջ ընկած՝ նա չէր նըկատել, թե ինչպես էր մոտեցել ճանապարհի մեջ կանգնած ձիուն, որը շարունակ պոչն էր ցնցում՝ վրան հավաքված ճանճերը քշելու համար:

Հանկարծ խոզուկ Կուզը իր քթի տակ այնպիսի մի հարված զգաց, որ վախից արյունը երակների մեջ ջուր դարձավ: Նա վեր թռավ և, պոչ, փախավ: Որքա՞ն ժամանակ խոզուկն այդպես չափ ընկած վազեց՝ չեմ կարող ասել, միայն երբ բարձրացրեց գլուխը, տեսավ, որ գտնըվում է քաղաքի շրջակայքում: Խոզուկ Կուզը մտավ մեծ տներից մեկի բակը և այգու թփերի մեջ կուչ եկավ: «Խո, խո, խո...»,— շարունակ կրկնում էր նա, որ այս անգամ նշանակում էր. «Ի՞նչ պետք է անել հետո, ես կարծես թե չգիտեմ»:

Բաց պատուհանից դաշնամուրի նըվագ էր լսվում: Խոզուկը լարվեց լսելու համար և իրեն-իրեն սկսեց միտք անել. «Ի՞նչ է սա նշանակում: Սա իսկական հրաշք է: Մարդիկ երևի այդ գործիքներով նվագում են այն, ինչ չեն կարողանում ասել բառերով: Ես այնպես կարիք ունեմ մի այդպիսի բանի...»:

Այդպես կուչ եկած դաշնամուրի նըվագն էր լսում, երբ նվագող փոքրիկ աղջիկը հանկարծ լսեց նրա ձայնը, գլուխը դուրս հանեց պատուհանից և նկատեց թփերի մեջ անշարժացած խոզուկին: Ապա այնպիսի մի աղմուկ բարձրացրեց, որ մի քանի վայրկյանում բակի բոլոր երեխաները հավաքվել էին արդեն խոզուկ Կուզի գլխին:

—Օ, ինչ կեղտոտն է, իսկական խոզ,— ասաց նրանցից մեկը:

— Իսկ կո՞ւզը, սապատավոր է, կարծես ուղտ լինի,— ասաց մյուսը:

«Այս էր մնում պակաս,— մտածեց խոզուկը,— հիմա էլ արի ու լսիր, թե ինչպես են քեզ հեգնում»: Ապա խորը շունչ քաշեց ու այնպիսի ուժգնությամբ սլացավ՝ դուրս պրծնելու երեխաների շրջափակող օղակից, որ դիպչելով նրանցից մեկի ոտքին՝ ցավ պատճառեց:

Երեխաները սկսեցին վազել խոզուկի հետևից:

Որքա՞ն վազեցին, քանի՞ պտույտ գործեցին բակով մեկ՝ ոչ ոք չիմացավ, բայց խոզուկն արդեն կռահել էր, որ իր ով լինելը այստեղ դժվար թե հասկանային, և որքան որ ուժ ուներ ոտքերում, փախավ:

Այսպես խոզուկ Կուզը հասավ քաղաքի գազանանոց: Երկաթյա վանդակները, որտեղ կենդանիներն էին փակված, շարված էին իրար դիմաց: Խոզուկը գնում էր նրանց միջով և մտածում. «Ծաղր է,

իսկական ծաղր: Թանգարանային նմուշ են դարձրել անգամ այս փետրած ուրուրներին, իսկ ինձ նման ազնվացեղ խոզուկները թափառում են չգիտես թե ուր»: Բայց երբ կանգնեց շունչ առնելու, հանկարծ նրա ականջին հասավ մի վայնասուն. դա իսկական խոզերի աղմուկ էր: Խոզուկ Կուզը շտապեց գտնել խոզանոցը և հասավ այնտեղ, որտեղ նրանց վանդակն էր: Երկաթյա սյուներից ներս նայելով՝ նա տեսավ բծավոր, պուտավոր, նախշավոր խոզերի մի ամբողջ հոտ:

Քիչ հետո նկատելով խոզուկ Կուզին՝ մոտեցան նրան:

Սրադունչ և համարձակ մեկը ձայն տըվեց.

— Էյ, ո՞վ ես, ներկայացիր անմիջապես:

— Ես խոզուկ Կուզն եմ, Գոնչո ցեղի պատվավոր Մեծ մայրիկի տասնվեցերորդ ժառանգը,— հանդիսավորությամբ սկսեց խոզուկը,— ես փախել եմ իմ բընակավայրից, որպեսզի այս աշխարհում ապրողներին ապացուցեմ, որ նրանց պատկերացումները խոզերի մասին սըխալ են, և պահպանեմ խոզային արժանապատվությունը…

— Դե լավ, լավ, վրա մի տուր,—բարկացավ սրադունչ խոզը,— չքվիր այստեղից, եթե չես ուզում վագրին կեր դառնալ: Հայտնի բան է. խոզը մնում է խոզ: Աշխարհին ցուցադրելու արժանի բոլոր ազնվացեղ ու վայրի խոզերը հավաքված են այստեղ, իսկ մնացածներին պահում են միայն ուտելու համար: Այստեղ ընտանի, խեղճ ու կրակ խոզերի տեղ չէ: Կորիր այստեղից… Սրան նայեք՝ արժանապատվությո՜ւն… Այս ասելուն պես խոզուկները հեռացան գոմի խորքը և վայնասունով սկսեցին իրարից խլել կերը…

Խոզուկ Կուզի վիճակը շատ ծանր էր: Նա հասկացավ, որ մինչև ինքը կփորձեր աշխարհին ինչ-որ բան ապացուցել, արդեն ամեն ինչ ապացուցված էր ու հաստատված: Այլևս ոչինչ հնարավոր չէ փոխել, և ում մտքից ինչ որ անցնի՝ կանի. կքարկոծի, կհեգնի իրեն, կանվանի կեղտոտ խոզ և վերջապես՝ կմորթի: Այժմ նա պարզորոշ գիտակցում էր մի բան. արժանապատվություն ձեռք բերելու համար պետք է խոզ չլինել, կամ՝ ավելին լինել, քան խոզը…



ՍՈՒՐԵՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ

## Աշնան քամին

Ամպերն են դիզվում սարերի գլխին,
Քամին բերում է գալլի ոռնոցը,
Աշնանամուտն է հայտնում բոլորին
Անձրևի բարակ, մեղմ կաթկթոցը:
Անձրևը քամուց օրորվեց մեկեն՝
Թռչուն ու գազան իրարով անցան,
Սարերից իջնող առուն բարակեց,
Խաշամով լցվեց ճամփա ու կածան:
Ու բարձրաճաշակ կնոջ պես քամին
Իր ճանապարհին գորգ հյուսեց նախշուն,
Դեղին տառերով ասեղնագործեց.
«Հայոց աշխարհում աշուն է, աշուն»:

## Մարդն ու երկիրը

Մարդը փոքր է երկրից
Միլիոն, միլիոն անգամ,
Մարդն՝ աննշան հյուլե,
Երկրագունդը՝ հսկա:
Արի տես՝ երկիրը
Մարդու ահից երբեք
Չունի քուն, դադար
Գիշեր ու ցերեկ:

## Արծիվն ու ճնճղուկը

Չար բազեի սարսափից,
Օձի ահից վախեցած՝
Ճնճղուկն իր բույնն էր հյուսել
Հենց արծվի բնից ցած:

Ու ճնճղուկը ողջ կյանքում
Ծվողում էր, գեղգեղում,
Արծվի ահ ու դողից
Ոչ ոք նրան չէր նեղում:

Նկարը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵՇՕՂԼՅԱՆԻ

# Ավտոմոդելային երթուղի

ԷԴՈՒԱՐԴ ՍՏԵՓԱՆՅԱՆ



Ավտոմեքենայի մոդելի ստեղծումը բարդ պրոցես է: Ժամանակակից տեխնիկական պահանջներին բավարարող ավտոմոդել պատրաստելու համար հարկավոր է ունենալ կոնստրուկտորական հմտություններ, կարողանալ աշխատել մետաղամշակման հաստոցների վրա, օգտվել զանազան սարքերից և գործիքներից:

Անհրաժեշտ է ունենալ կայուն գիտելիքներ նյութերի հատկությունների, կառուցվածքի և դրանց մշակման եղանակների վերաբերյալ, որոշակի գիտելիքներ աէրոդինամիկայից և դրանք կիրառել մոդելի նախագծման ժամանակ:

Եկեք ծանոթանանք մոդելային երթուղու կառուցվածքի և պատրաստման եղանակների հետ: Ներկայացվող երթուղին բաղկացած է երեք զուգահեռ մեկնուղիներից՝ երեք մոդելների միաժամանակյա մրցության համար: Ավտոմոբիլները վարելու, փորձարկելու համար անհրաժեշտ է ունենալ ավտոմոդելային երթուղի, որն հատուկ շինություն է և ապահովում է մոդելների շարժումը և ընթացքի ժամանակ էլեկտրաշարժիչների սնուցումը էլեկտրաէներգիայով: Մոդելային երթուղու հիմնական տարրերն ու հանգույցներն են մեկնուղին՝ էլեկտրահաղորդիչ ժապավեններով, կառավարակետը՝ կարգավորվող սնուցման աղբյուրներով և անջատիչներով, ժամանակի հաշվարկման սարքը (կարող է փոխարինվել վայրկյանաչափով) և պտույտների հաշվիչը:

Ելնելով մոդելային երթուղու տեղադրման վայրից, նախօրոք հարկավոր է նախագծել դրա ընդհանուր տեսքը (կոնֆիգուրացիա): Աշխատանքներն սկսելուց առաջ հարկավոր է 10—12 մմ հաստությամբ ֆաներա կամ թեփասալիկ (ընդ որում՝ շատ կարևոր է, որ այն լինի հարթ, չոր և չունենա պոկվող շերտեր), փայտ, սոսինձ, մեխեր, տարբեր չափերի և ձևերի պտուտագամեր, պղնձե կամ արույրե էլեկտրալար (կտրվածքի

չափերը. հաստությունը՝ 1—3 մմ, լայնությունը՝ 8—12 մմ), տարբեր գույնի նիտրոներկեր, լաք՝ մանրատախտակի համար, ռադիոդետալներ, սարքավորումներ և անհրաժեշտ գործիքներ:

Մեկնուղու ուղիղ տեղամասերը կըտրատվում են էլեկտրական սղոցով, ֆաների վերին շերտերի ուղղությանը զուգահեռ, իսկ շրջադարձային տեղամասերը հեշտությամբ կարելի է կտրատել ձեռքի սղոցով: Կտրատելուց հետո խնամքով մշակվում և մաքրվում են ճակատամասերը: Պատրաստի տեղամասերը փայտյա չորսուների կամ ֆաներայի կտորների միջոցով իրար միացնելուց և ամրացնելուց հետո ստանում ենք մոդելային երթուղու ընդհանուր տեսքը:

Էլեկտրահաղորդիչ ժապավենները ամրացնելուց առաջ, հարկավոր է մեկնուղու վրա նախապես արված չափանշումներով ստանալ ակոսներ: (Ակոսների չափերը որոշվում են՝ ելնելով ձեռք բերված էլեկտրահաղորդիչ ժապավենի չափերից): Ակոսները հնարավոր է ստանալ ֆրեզերային հաստոցի կամ այդ նըպատակի համար պատրաստված հատուկ հարմարանքի միջոցով: Էլեկտրահաղորդիչ ժապավենները տեղադրելուց առաջ անհրաժեշտ է դրանք լավ ուղղել: Ուղղելու համար անհրաժեշտ է փափկելու աստիճան շիկացնել, որից հետո ձըգել: Ուղիղ հատվածները տեղադրվում են ակոսների մեջ և մեկնուղու ներքևի մասից պտտագամերի միջոցով ամրացվում նախօրոք պարուրված անցքերի մեջ: Ցանկալի է ամրացնել 3 մմ տրամագիծ ունեցող պտտագամերով՝ յուրաքանչյուր 10—15 սմ հեռավորության վրա: Կցորդման տեղամասերում հարկավոր է ապահովել հուսալի էլեկտրահաղորդականություն: Նույն մեկնուղու երկու (պլյուս և մինուս) էլեկտրահաղորդիչ ժապավենների միջև եղած հեռավորությունը պետք է լինի 3—4 մմ: Էլեկտրահաղորդիչ ժապավենները տեղադրելուց հետո հարկավոր է մեկնուղին դնել հենարանների վրա, վերջնական դիրքը որոշել մոդելներ փորձարկելու մի-






ջոցով: Մեկնուղու ներքևի մասից եզրային կողերի ամբողջ երկարությամբ ամրացվում են 3-4 սմ չափերի չորսուներ, որոնց հետագայում ամրանալու են երթուղու կողերը: Վերջնական դիրքի բերելուց հետո կատարվում է մեկնուղու մակերևույթի վրա եղած թերությունների վերացում՝ հղկում և մակերևույթի վերջնական մշակում: Հղկելուց հետո էլեկտրահաղորդիչ ժապավենները և մեկնուղին պետք է ունենան միևնույն մակարդակը: Մակերևույթը խնամքով մաքրելուց հետո կպչուն ժապավենի միջոցով հարկավոր է ծածկել էլեկտրահաղորդիչ ժապավենները, որպեսզի դրանք ներկելու ընթացքում չկեղտոտվեն:

Առաջին շերտը պատվում է մանրատախտակի համար նախատեսված լաքով (ՏՈՒ—6—15—50), իսկ չորանալուց հետո մեկ կամ երկու շերտով ներկվում է ցանկացած գույնի նիտրոներկով: Դրանից հետո երթուղու երկարության հարյուրերորդական մասերով յուրաքանչյուր գծի համար կատարվում է չափանշումներ և վերջում նորից պատվում է լաքով:

Մակերևույթի վերջնական մշակումից հետո ամրացվում են երթուղու կողերը, որոնց թույլատրելի չափերն են 30—60 մմ:

Սնուցման աղբյուրի և պտույտների հաշվիչների համար նախատեսված սարքավորումները կարելի է պատրաստել տրված սխեմաներով: Որպես սնուցման աղբյուրներ՝ կարելի է օգտագործել նաև դպրոցական ՎՍ—24 տիպի հաստատուն հոսանքի ուղղիչները: Լարումը թույլատրվում է մինչև 16 վոլտ, իսկ նվազագույն հոսանքը՝ 8—10 ամպեր:

Փորձարկելուց առաջ երթուղու մակերևույթի այն մասերը, որտեղ հպվում են մոդելների անիվները, հարկավոր է պատել բարակ քսուքի շերտով. բաղադրությունը՝ 20 տոկոս վազելին, 80 տոկոս վիստի (քսուք՝ դահուկների համար):

Մրցումների համար նախատեսված մոդելային մայրուղիները պետք է ունենան նվազագույնը 4 մեկնուղի և 15 մ-ից ոչ պակաս երկարություն:

Հ. Գ. Երթուղին պատրաստելու ժամանակ դժվարությունների հանդիպելիս խորհրդակցելու համար կարելի է դիմել պատանի տեխնիկների հանրապետական կայան (հեռ.՝ 77—82—49):

Ռիգայի կենտրոնում է գտնվում լատվիական ռադիոյի շենքը: Այստեղ, գործուղումներից, ստեղծագործական հանդիպումներից և համերգներից հետո, իր ամենօրյա պարտականությունների կատարմանն է վերադառնում երաժշտական հաղորդումների գլխավոր խմբագիր, ՍՍՀՄ ժողովրդական արտիստ, կոմպոզիտոր Ռայմոնդ Պաուլսը: Եվ այստեղ, նրա ոչ մեծ աշխատասենյակում են անցնում մանկական «Ջերգուզիտե» («Կըկվիկ») համույթի փորձերը:

Գտնվելով իր փառքի գագաթնակետում, Ռայմոնդ Պաուլսը սկսեց երգեր գրել երեխաների համար, զբաղվել նրանցով՝ առանց եռանդ ու ժամանակ խնայելու: Մեծահասակ «աստղերը» կարող են նախանձել այն ուշադրությանն ու հոգատարությանը, որով մաեստրոն վերաբերվում է իր փոքրիկ սաներին:

— «Կկվիկն» իմ հոբբին է,— ասում է մաեստրոն,— թեև այս բառն այնքան էլ ճշգրիտ չէ. ավելի ճիշտ՝ ես սիրում եմ երեխաների հետ աշխատել և այնպես եմ ոգևորվել, որ ուրիշ շատ գործերի համար ժամանակը չի բավականացնում: Չեմ թաքցնում, ես ինքս էլ մեծ հաճույք եմ ստանում երեխաների հետ շփվելով: Եվ այդ աշխատանքի ողջ հմայքն ու գեղեցկությունն այն է, որ երեխաներն ուրախանում են ինձ հետ, իսկ ինձ համար ուրախ ու հաճելի է նրանց հետ:

Բացվում է դուռը, և դռան ետևից ներս է նայում փոքրիկ մենակատարը: Տեսնելով մաեստրոյին, մի տեսակ շըփոթվում է... «Մի՞թե ես քեզ չեմ սովորեցրել նախ դուռը թակել, թույլտվություն ստանալ և հետո միայն ներս մըտնել»,— խիստ ձայնով ասում է Պաուլսը, բայց նրա աչքերում ժպիտ է թաքնված: Փոքրիկը վեց տարեկան է, նա արդեն նախապատրաստական դասարանում է, իսկ նրա ընկերուհին դեռ դպրոց չի գնում, գրել չգիտի և դեռ նոր է կարդալ սովորում: Բայց երկուսն էլ, և «Կկվիկի» բոլոր անդամներն ընդհանրապես, ապրում են երաժշտության աշխարհում, երգի ջերմությամբ...

— Ժամանակակից կյանքն այնպիսին է, որ, ուզեք թե չուզեք, դեռ մանկուց մեզ շրջապատում է երաժշտությունը: Միայն թե հարց է. ինչպիսի՞, ո՞ր երաժըշտությունը, և ինչպե՞ս է այն ներընկալում փոքրիկ մարդը: Երաժշտությունն ընդհանուր կուլտուրայի անբաժան մասն



# Մանկության օրերի երգը

է, որի հիմքերը ստեղծվում են մանկության տարիներին: Եվ այն, թե ինչպիսի երգեր է երեխան լսում, ու նախ՝ ինչպիսի հեքիաթներ են նրա համար կարդում, դառնում է այն բարոյական մթնոլորտը, որի մեջ մեծանում է երեխան, այն հիմքը, որի վրա ստեղծվում է մարդու հոգևոր աշխարհը: Պուշկինի դայակը՝ Արինա Ռոդիոնովնան, իր առջև մեծ բանաստեղծ դաստիարակելու խնդիր չէր դրել, նա ուղղակի սիրում էր մանչուկին և նրա համար հեքիաթներ էր պատմում ու երգեր երգում: Այդ ամենը Պուշկինի կյանքում այնքան էլ փոքրիկ դեր չխաղաց: Հավատացնում եմ ձեզ, որ ցանկացած մարդու համար մանուկ օրերին լըսած երգը դառնում է բարոյական զարգացման խթաններից մեկը, որոշում նրա վերաբերմունքը այլ մարդկանց նկատմամբ: Երբեմն ես ինձ հարց եմ տալիս. ո՞ւր են մեր ժողովրդական երգերը, օրորոցայինները, որ երեկոներին քնքշորեն երգում էին մայրերը, տատիկները: Ո՞վ է դրանք հիմա հիշում: Գուցե ինձ հետ չհամաձայնեն. ժամանակակից մայրը այդ երգերը երգելու համար որտեղի՞ց ժամանակ գտնի: Եվ ուզում եմ ասել, ծնողը որքան էլ զբաղված լինի, իր երեխայի հետ շփվելու համար ժամանակ պե՛տք է գտնի: Եվ շատ ափսոս, որ երաժշտու-

թյունը այսօրվա փոքրիկի կյանքն է խուժում մագնիտաֆոնի դղրդացնող ռիթմով: Գյուղից գալիս է տատիկն ու սարսափահար նայում թոռանը, որն աշխարհից իրեն «պարսպապատել է» ականջակալներով, իսկ ականջակալներում ամբողջ ուժով աղաղակում է արտասահմանյան մի անսամբլ: Ինձ ճիշտ հասկացեք, ես ոչինչ չունեմ այդ անսամբլի դեմ: Բայց պետք է, որ փոքրերըն իրենց բանահյուսությունն իմանան, լսեն այնպիսի երգեր, որոնց մեջ քնքշություն ու ջերմություն կա, իսկական կենդանի զգացմունք, մարդկային զգացողություններ: Նա պետք է ցավակցի այդ երգերի հերոսներին... Մենք մեր երեխաների համար աշխատում ենք ամեն ինչ անել՝ այնքան էլ չմտահոգվելով այդպիսի դաստիարակության պտուղների մասին, մոռանալով, որ շատ բաներ պարտավոր ենք սովորեցնել՝ առանց ըսպասելու, որ այդ կանի դպրոցը, կբացատրեն ուսուցիչները... Երբեմն ձկնորսության գնալիս ես նայում եմ, թե արագիլներն ինչպես են իրենց ձագերին թռչչել սովորեցնում, ախր դա մի ամբողջ ներկայացում է, որ մեզ ցույց է տալիս բնությունը՝ հուշելու՝ սովորեք: Նրանք բներից դուրս են հրում իրենց ձագերին, որոնք մի փոքր թռչելով՝ վայր են ընկնում, փորձում թափահարել թևերն ու կրկին թռչել, բայց նորից են ընկնում: Միայն վերջին պահին ծնողներից մեկը օդի մեջ որսում է նրանց, և ամեն ինչ նորից է սկսվում: Ահա հենց դա է դաստիարակությունը, ուսուցումը, իսկական մարզումը և նախապատրաստումը կյանքին: Իսկ մեր «թռչնակները» բերանները բաց նստում ու սպասում են, թե հայրիկն ու մայրիկը երբ նոր պատառ կբերեն: Դատեցեք ինքներդ. վատ է դա, թե լավ՝ բայց իմ տատիկը, երբ մեր տանը հյուրեր էին լինում, մեզ՝ մինչև 14 տարեկան երեխաներիս, չէր թողնում մոտենալ ընդհանուր սեղանին: Նստեք խոհանոցում, ասում էր նա, ու մի խառնվեք: Եվ մեր մտքի ծայրով իսկ չէր անցնում չենթարկվել նրան: Իհարկե, մեծ ջանքեր են անհրաժեշտ երեխային իրեն պահելու ձևեր սովորեցնելու համար: Շատ ավելի հեշտ է երեխային ամեն ինչ թույլ տալը, և նա առաջինը կմոտենա սեղանին, կվերցնի ամենահամեղ պատառը, կխառնվի մեծերի խոսակցությանը: Դրանք հենց մեր բացթողումների, հենց անկուլտուրականության, գռեհկության, կոպտության արմատներն են, որոնց պատճառով հիմա մենք տառապում ենք:

Երբ «Կկվիկի» փորձի ժամանակ աշխատասենյակ են մտնում մեծահասակները, բոլոր փոքրիկները միասին ոտքի են կանգնում ու խմբով էլ «բարև ձեզ» ասում և բոլորն էլ ոտքի վրա են մնում այնքան ժամանակ,քանի դեռ չեն նստել մեծերը: Ու թեև ռադիոյում միջավայրը շատ ազատ ու անկաշկանդ է և ոչնչով դպրոց չի հիշեցնում, այնուամենայնիվ, վարվելակերպի նման նորմերը երեխաների մեջ ամրակայվել են: Բավական է, որ Պաուլսի մատները դիպչեն դաշնամուրի ստեղներին, որպեսզի փոքրիկները նույն պահին «բացվեն ու ծաղկեն»՝ կարծես ձգտելով դեպի երաժշտությունը: Երգում են անկեղծ ուրախությամբ, ռիթմիկ շարժումներով, և չի կարելի չզարմանալ նրանց արտիստականության վրա: Մի՞թե երաժշտությունն այդպիսին կարող է դարձնել բոլոր երեխաներին:

— Ինչպես ցույց է տալիս փորձը,— ասում է Պաուլսը,— երեխաների ինքնաարտահայտմանն ավելի շատ օգնում է հատկապես ռիթմիկ երաժշտությունը: Թող լինի թեկուզ երեքամյա փոքրիկը, այո, որքան էլ զվարճալի է՝ և նա, յուրովի, բայց էլի նման երաժշտություն լըսելիս ոտքի թաթով ռիթմ է պահում: Երեխաներին ավելի մոտ ու հասկանալի է այն երաժշտության լեզուն, որ փոխադրվում է պարային ռիթմի: Մոսկվայում, իմ հեղինակային համերգների ժամանակ, կուլիսներում կանգնած՝ փոքրիկներն անմիջապես սովորում էին Լայմա Վայկուլեի բոլոր երգերը և ճշգրտորեն կրկնում նրա բոլոր շարժումները: Ես դրա մեջ ոչ մի վատ բան չեմ տեսնում: Ինչո՞ւ են անչափահասները սիրում ռոքը: Նրանց համար դա շարժվելու, պարելու հնարավորություն է: Երեխաները ռիթմի բնական զգացողություն ունեն՝ որին արտահայտվելու հնարավորություն է պետք տալ: Մենք շատ շուտ ենք մոռանում, որ ինքներս էլ ինչ-որ ժամանակ հենց այդպիսին էինք, ուղղակի ժամանակների հետ փոխվել են նաև երաժշտական ձևերը: Իմ երիտասարդության շրջանում մենք բոլորս ջազով էինք հըրապուրված և հենց նույն կերպ «ծռմըռվելով» էլ, ինչպես մեզ մեծահասակներն էին բնորոշում, պարում էինք: Իսկ հիմա ինձ հանդիմանում են, թե ես երեխանե-

րին փչացնում եմ, բեմի վրա «ծռմռվել» եմ սովորեցնում, նրանց համար «անլուրջ», «թեթև» երգեր եմ գրում: Հանդիմանանքներ լսում եմ Լատվիայի լուսավորության մինիստրությունից և, անկեղծ ասած, դեռ չեմ դադարել զարմանալ, թե ինչու մեր պետական շատ պաշտոնյաներ չեն հասկանում, որ ավելի լավ է երեխաներին երաժշտություն սիրել սովորեցնել խաղի օգնությամբ, քան թե «լուրջ» դասերով այն վանել նրանցից մշտապես: Ահա այսպիսի մոտեցումն էլ դառնում է պատճառն այն բանի, որ դպրոցներում երաժշտության դասաժամերը երեխաների մեջ հաճախ վնասում, ետ են մղում հնչյունների կախարդական աշխարհը յուրացնելու ցանկությունը: Այս հարցը, իմ կարծիքով, առանձնակի ուշադրություն է պահանջում: Ո՞ր դասերն են երկրորդական համարվում. նկարչությունն ու երգ-երաժշտությունը, երեխաներին ո՞ւր են ստիպում հաճախել՝ երգչախմբային պարապմունքների: Ինձ համար, իհարկե, դժվար է դատել, բայց տպավորությունն այնպիսին է, որ դըպրոցներում երգ-երաժշտություն դասավանդում են պատահական մարդիկ: Ինչպես երևում է՝ եկել է ժամանակը լրջորեն խոսելու նաև ուսուցիչների հատուկ պատրաստվածության մասին: Ժամանակակից երգարվեստին դպրոցականները դեռ էլի ինչ-որ կերպ ծանոթանում են: Իսկ դասական երաժշտությո՞ւնը, ժողովրդակա՞նը, ո՞վ քը վերջապես..

Այդ երեխաների բախտն է, որ նրանց կյանքի հենց սկզբից ճակատագիրը հանդիպեցրել է մի հրաշալի մարդու, մանկավարժի, կոմպոզիտորի ու կատարողի: Իսկ ինքը մաեստրոն ինչպե՞ս է սկսել երաժշտություն սովորել:

— Ինձ ստիպեցին ծնողներս: Հայրս, որ ապակեգործ բանվոր էր, իմ ապագայի հետ հատուկ մեծ հույսեր էր կապում: Նա՝ բնությունից երաժշտական լսողությամբ օժտված՝ հավանաբար, ըզգաց, որ ինձ չի կարելի երաժշտություն չսովորել: Իհարկե, նա ստիպված էր հաղթահարել իմ ընդդիմությունը, իսկ ես մի քանի տարի դիմադրում էի. ով կուզենա գամմաներ սովորել, երբ բոլոր երեխաները բակում գնդակ են խաղում: Դե, իսկ հետո հասկացա, որ դա հենց իմ կոչումն է: Երկար եմ սովորել. ընդունվեցի Լատվիայի կոնսերվատորիան, ավարտեցի դաշնամուրի դասարանը,



պարապում էի կոմպոզիցիայի դասարանում: Իսկ ահա իմ աղջկան երաժշտություն չսովորեցրի. նախ՝ որովհետև կարծում եմ, որ դասական երաժշտությունը, այնուամենայնիվ, ընտրյալների մենաշնորհն է՝ բնությունից օժտված երեխաների փոքրաթիվ մի խմբի համար: Նրանք միանգամայն յուրօրինակ կյանքով են ապրում, իրենց յուրօրինակ աշխարհում, հրաժարվելով մանկական աշխարհի շատ զվարճություններից: Շատ կարևոր է, որ և՛ ծնողները, և՛ մանկավարժները ժամանակին նկատեն այդ օժտվածությունը, բայց և չչափազանցնեն երեխայի ընդունակությունները, որպեսզի նրան չդժբախտացնեն: Այնուհետև՝ կարծում եմ, երեխաները իրենց հայրերի ճակատագիրը պետք է կրկնեն միայն այն դեպքում, եթե վստահ են, որ կարող են առաջ անցնել նրանցից: Փառքը ազգանվան հետ ժառանգություն չի տրվում: Իսկ նրանք, ովքեր կարծում են, որ ծընողների հեղինակությունը կարող է հեշտացնել իրենց ճակատագիրը, դատապարտված են անհաջողության՝ հատկապես այսպես կոչված ստեղծագործական մասնագիտություններում:



ՍԵՐԳԵՅ ՓԱՐԱՋԱՆՈՎ. «ՀՈՐՍ ՍԱՐՍԱՓԵԼԻ ԵՎ ԾԻԾԱՂԵԼԻ ԿՅԱՆՔԸ»



ԻՆԴԵՔՍ՝ 77806

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.